ԳԵՂԱՄ ՍԻՐՈՒՆՅԱՆ

# Ձյունը քաղաքում

Մի սիրուն ձյունիկ՝
Քնքուշ, աստղաձև,
Գալիս է վերից,
Ամպից ճերմակթև:
Գալիս է, գալիս
Նազերով պես-պես,
Ինքը իր պարից
Հմայված այնպես:
Բայց դեռ ցած չիջած՝
Հալվում է անձայն
Ու ընկնում մայթին
Արցունքի նման:
Նրան տեսնում են
Քույրիկներն անթիվ
Ու ցած են թափվում
Ճերմակթև ամպից:
Գալիս են տրտում,
Կիտվում անհամար
Իրենց քրոջ շուրջ
Անշարժ ու համր:
Այնքան են գալիս,
Որ էլ տեղ չկա,
Լցվում է բակը
Ու քաղաքն հսկա:
Եվ չեն բաժանվում
Իրենց քրոջից,
Մինչև գալիս է
Գարունը նորից,
Երբ բոլորն արդեն
Կաթիլներ դառած
Գնում են՝ իրենց
Քույրիկին առած...

# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Լույս է տեսնում 1923 թվականից

## Այս համարում 1 • 87



*Հանձնված է տպագրության 27.X.1986 թ.: Ստորագրված է տպագրության 24.XII.1986 թ.: ՎՖ 12497: Թուղթ օֆսեթ, $70\times100^{1}/_{16}$: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 66832: Պատվեր՝ 2075: Գինը՝ 15 կոպ.:*

*Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:*

Сдано в набор 27.X.1986 г. Подписано к печати 24.XII.1986 г. Формат $70\times100^{1}/_{16}$. ВФ 12497. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 66832. Заказ 2075. Цена 15 коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

**Շապիկը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՇՕՂԼՅԱՆԻ**

Լուսանկարը՝ ՀԱՄԱԶԱՍՊ ԽԱՉԱՏՐՅԱՆԻ

ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ

## Ձմեռ

Ինչքան պիտի փաթիլ-փաթիլ
Ամպիկը իր ձյունը թափի,
Որ ձյունի տակ մնան տաքուկ,
Որ ձյունի տակ մնան փափուկ
Սար ու ձորեր,
Հանդ ու քոլեր,
Ծառ ու բներ,
Լիճ ու գետեր,
Արահետներ...

Ամպիկի ուժը չի պատի:
Չէ, նա չունի այդքան փաթիլ,
Որ ամեն թիզ հողի վրա
Առատորեն տեղա, տեղա
Ու ձյունի տակ թողնի փափուկ,
Ու ձյունի տակ պահի տաքուկ
Սար ու ձորեր,
Հանդ ու քոլեր,
Ծառ ու բներ,
Գյուղ ու տներ,
Լիճ ու գետեր,
Արահետներ...

Դրա համար ամպերն հավաք
Ձայն են տալիս բոլոր-բոլոր
Ամպիկներին մեծ թե փոքր,
Ճշգրտում են տեղն ամենքի,
Ծածկում են դեմքը երկնքի
Ու բացելով պարկերն անթիվ՝
Ձյուն են թափում փաթիլ-փաթիլ,
Որ ձյունի տակ մնան փափուկ,
Որ ձյունի տակ մնան տաքուկ
Սար ու ձորեր,
Հանդ ու քոլեր,
Ծառ ու բներ,
Գյուղ ու տներ,
Լիճ ու գետեր,
Արահետներ...





## ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ



Երգս ծնվում է
Իմ արցունքներից
Եվ խոհերիս հետ խառնուրդ դառած,
Որպես քարեղեն մի զանգված հալվող,
Հանդարտ,
Փոքր-ինչ նեղացած՝
Իմ գրչի ծայրից իջնում է ցած
Եվ տարածվելով անբիծ թղթին՝
Թեթևություն է տալիս իմ սրտին:

## Արագիլներ

Արագիլներ, արագիլներ,
Մի՞թե դուք էլ եք ծերանում,
Ի՞նչ եք խորհում, երբ կեսօրին
Մութ ամպերն են լուռ ծանրանում:

Արագիլներ, արագիլներ,
Ինձ էլ տարեք ձեզ հետ հեռու,
Այնտեղ, որտեղ բարկ արև է,
Այնտեղ, որտեղ ծովն է եռում:

Ու թող թռչել ես իմանամ,
Թռչեմ ազատ իմ երգերով,
Ձեզ պես անցնեմ ծով ու ցամաք
Ու ձեզ հետ տուն վերադառնամ:

ՀՈՎԻԿ ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ
Երևանի № 18 դպրոց, 8-րդ դասարան







# Լուռ. Նկարում էին...

Գեղագիտական կենտրոնի գեղանկարչության բաժնի ղեկավար ընկեր Միքայելյանը հանձնարարել է ապլիկացիոն աշխատանք կատարել ցանկացած թեմայով: Արևիկը ընտրել է գյուղական գիշերը: Սև կտորի վրա ճերմակով արված աստղերն են ու լուսինը: Տանիքները մխրճվել են գիշերային խավարի մեջ: Բակերում երևում են կիսամերկ ծառերը: Աղջիկն այնպիսի կտորներ է ընտրել, որ շատ են նման ծառերի: Ծառի ձևով կտրված դեղին նախշավոր գծեր ունեցող մուգ դարչնագույն կտորը իսկական աշնանային ծառ է հիշեցնում, որը քամուց թեքել է ճյուղերն ու կռացել: Ահա դեղնած, կլորիկ մի ծառ, որը պատրաստված է մետաքսյա նուրբ կտորից: Գիշերային խավարում այն փայլում է ու կարծես հիշեցնում, որ արդեն աշուն է:

Կարենը պատկերել է հնագույն ժամանակների նետաձիգների, որոնք հսկա նետերով հարվածում են նշանաձողին: Իսկ շուրջը հավաքված բազմությունը հետևում է նրանց: Կարենի ուշադրությունից ոչինչ չի վրիպել: Մարտիկների տարազներն արված են ճշգրիտ ու բծախնդրությամբ: Հեռվում երևացող հանդիսատեսը նույնպես նկարված է ժամանակին բնորոշ հագուստով, ոտնամաններով: Կարենը գրադարանում փնտրել ու գտել է գրքեր, որտեղ պատկերված են տարբեր ժամանակների տարազներ:

Նա լավ գիտե, որ եթե պատմական, իր համար անծանոթ ժամանակների մասին աշխատանք է կատարում, ուրեմն պետք է հավատարիմ մնա այդ ժամանակի կյանքին ու կենցաղին:

Լուռ ստեղծագործում են երեխաները: Ստեղծագործում են ու ասես միաժամանակ երազում իրենց հետագա այն նոր աշխատանքների մասին, որոնք աշխարհի համար, նաև իրենց համար հայտնություններ են լինելու:

ՇԱՎԱՐՇ ԽԱՉԱՏՐՅԱՆ

Լուսանկարները՝ ՎԼԱԴԻՄԻՐ ՍԱՐՈՅԱՆԻ

**ՌԱՖԱՅԵԼ ՆԱՀԱՊԵՏՅԱՆ**




Նկարը՝ ՀԵՆՐԻԿ ՄԱՄՅԱՆԻ

Ջրաղացը մեր գյուղից երեք կիլոմետր հեռու էր գտնվում, մի հին, խարխլված մատուռի մոտ, ուր ծեր կանայք շարունակում էին մոմ վառել, աղոթել... Ամառային արձակուրդներին գյուղ գնալիս, չգիտեմ ինչու, այդ կողմերից խուսափում էի և, չնայած լողանալու ամենալավ տեղը հենց ջրաղացի մոտ էր, քիչ ներքև, միևնույնն է՝ այնտեղ չէի գնում և գյուղի ընկերներիս համոզում էի, որ կամուրջի տակ լողանալը հազար անգամ ավելի լավ է ու համ էլ՝ գյուղին մոտ: Սակայն այդ տարի ամռանը մեծ հորեղբայրս մի գայթակղիչ առաջարկ արեց.

— Էսօր իրիկուն ջաղաց եմ գնալու,— ասաց նա,— գիշերն էլ մնալու եմ: Ուզում ես՝ հետս արի:

Չիմացա՝ ինչ պատասխանեմ: Գնալ շատ էի ուզում: Գիտեի, որ այնտեղ գյուղի ընկերներիցս կլինեն: Լավ կլողանայինք, փոքրիկ խարույկ կվառեինք, հետաքրքիր պատմություններ կպատմեինք և կլսեինք մեծերի զարմանալի, լուրջ խոսակցությունները:

— Դու մատուռից վախենում ես,— ուշադիր ինձ նայելով ասաց մեծ հորեղբայրս,— վախենալու բան չկա...

Մեծ հորեղբորս հետ ես ոչ մի բանից չէի վախենում ու համոզված էի, որ նա ճանաչածս ամենահասկացող մարդն է: Երբ այնպիսի մի բան էի անում, որ նա աշխարհում ոչ ոքի չէր ների, ոչ ոքի, ինձ ներում էր:

— Մի՛ արա,— ասում էր նա և ուսին թփթփացնում, բայց հետո մտածում էր, թե ես կարող է դրանից էլ վիրավորվեմ, և ծիծաղում էր,— էլ չես անի, չէ՞:

— Չէ,— ասում էի ես,— չեմ անի:

— Տեսա՞ք,— ասում էր նա շուրջը հավաքվածներին, որոնք ինձանից բողոքած էին լինում,— ասաց՝ չէ: Երեխուն էլ բան չասեք:

— Ախր մի ասեիր՝ իմանայինք,— հարցրեց մեծ հորեղբայրս գլուխս շոյելով,— ի՞նչ է պատահել, ինչի՞ ես մատուռից վախենում:

— Չեմ վախենում,— ասացի ես:

— Ուրեմն կգա՞ս,— հարցրեց մեծ հորեղբայրս,— ես հո գիտեմ, որ շատ ես ուզում գալ:

— Ըհը,— ասացի ես,— կգամ:

— Չվախենաս,— ասաց փոքր հորեղբայրս,— ես էլ եմ գալու ջաղաց: Ընենց որ՝ հեչ չվախենաս:

— Չէ,— ասաց մեծ հորեղբայրս,— դու չես գալու:

— Գալու եմ,— համառեց փոքր հորեղբայրս:

— Չես գալու,— հանգիստ, բայց սառը՝ ամենացուրտ օրվա պես կտրող ձայնով, ասաց մեծ հորեղբայրս,— տանը կմնաս, քու մտքինն ուրիշ է, տանը գործ կճարվի քեզ համար:

Փոքր հորեղբայրս խեղճ-խեղճ պապին նայեց, բայց պապս աչքերը փախցրեց. Վաղուց արդեն մեր գերդաստանում ամեն ինչ մեծ հորեղբայրս էր որոշում: Փոքր հորեղբայրս այդ գիտեր ու դրա համար էլ մեկ-մեկ, երբ բարկանում էր, պապին ասում էր.

— Դեկորատիվ թագավոր ես, է: Խաբար չկա վրեդ, որ մեծ տղեդ կոնստիտուցիոն միապետություն է ստեղծել:

Փոքր հորեղբայրս անօգնական շուրջը նայեց, հետո մեծ եղբորը: Հանկարծ նրա դեմքի արտահայտությունը միանգամից փոխվեց: Մի հիմարավուն, շատ հիմարավուն և երանավետ ժպիտ հայտնվեց երեսին, ձեռքի ափը մուրացկանի նման մեծ եղբորը պարզեց ու, գլուխը ծռելով, թիկ-

թլիկ ասաց.

— Ապելիկ ջան, ապելիկ, ինչ տլինի, գամ, էլի…

Բոլորը փռթկացին, անգամ պապս, ու չնայած մեծ հորեղբայրս փորձեց նույնիսկ չժպտալ՝ ծիծաղեց:

— Դերասան, իսկական դերասան,—ասաց նա ու հասկանալով, որ դերասան ասելով փոքր եղբորը գովում է, ավելացրեց,— մայմուն:

Փոքր հորեղբայրս դերասանական շնորհք ուներ ու մեկ-մեկ պատահում էր, որ երբ մարդիկ մի բան ուտելու համար գործը թողնում էին ու որևէ ստվերոտ տեղ ծալապատիկ նստում, նա դեզի վրա էր ցատկում, մազերը ետ տանում ու զրնգուն ձայնով ասում.

Մեր գյուղն էն է, որ հպարտ
Լեռների մեջ միգապատ…

Ու մարդիկ նրան հանույքով լսում էին, ավարտելուց հետո ծափահարում և ասում՝ Վահրամ Փափազյան է, որ կա:

— Գնա՞մ մերոնց ցորենը հավաքեմ,— հարցրեց փոքր հորեղբայրս, ցանկանալով համոզվել, որ ջրաղաց գալու թույլտվություն ստացավ:

— Գնա',— ասաց մեծ հորեղբայրս:

Գյուղում եղած մեր ողջ ազգության ցորենը փոքր հորեղբայրս իր սայլով էր աղալու տանում:

Երեկոյան, երբ ճանապարհ ընկանք, ես ու մեծ հորեղբայրս սայլի նստիքին տեղավորվեցինք, իսկ փոքր հորեղբայրս ձեռքն առավ մտրակը, հպտեց եզներին և բղավեց՝ գնացի՛նք, գյոզալներս, գնացի՛նք: Ու սկսեց սուլելով քայլել եզների կողքով: Եզները օրոր-շորորալով իրենց համար գնում էին, մեծ հորեղբայրս իր մտքերի հետ էր, իսկ փոքր հորեղբայրս սուլում էր ու մեկ-մեկ ընդհատում սուլելը և բառերով երգում: Մի անգամ լսեցի «Քո աչքերը հրացայտ», մի այլ անգամ՝ «Քո աչերը հոգեբով»: Ես չէի կարծում, որ փոքր հորեղբայրս այդպիսի բառեր գիտի, որովհետև ոչ մի անգամ չէի լսել, որ խոսելիս դրանք օգտագործեր: Զարմացած լսում էի, ու հենց որ նա դադարում էր սուլել և երգելուն էր անցնում, լարվում էի, որ լավ լսեմ, թե ինչպես է նա արտաբերում այդ զարմանալի բառերը:

— Հոգի հանեցիր, էլի,— հանկարծ խոսեց մեծ հորեղբայրս,— գոնե շուտ դպրոցն ավարտեիր, գնայիր բանակ, գայիր, պսակեի՝ պրծնեի քեզնից:

— Ապեր,— ծիծաղեց փոքր հորեղբայրս,— հուշիկ գնա, ապեր, հլա ո՞ւր ես, որ ինձ պսակես, էդ հլա ե՞րբ կըլնի:

— Բա որ էդքանը հասկանում ես, ինչի՞ ես էդ «Հոգեբով ու հրացայտ աչքերով» գահլաս տանում:

— Հոգիս էրվում է, ապեր, հոգիս խորովվում է,— տխուր ասաց փոքր հորեղբայրս:

— Էրեխու մոտ ավել-պակաս մի խոսի,— սաստեց մեծ հորեղբայրս:

— Չեմ խոսի, ապեր,— գլուխը կախ ասաց փոքր հորեղբայրս,— բայց հոգիս խորովվում է:

Մեծ հորեղբայրս սայլից իջավ, մոտեցավ եղբորը, ձեռքը ուսին դրեց, ու նրանք առաջ անցան:

Հով երեկո էր: Արևը սարի մյուս կողմն էր անցել, և մեր գյուղն ու ջրաղաց տանող ճանապարհը ստվերի հսկա եռանկյունու մեջ էին ընկել: Սարի երկու կողքի գյուղերն ու դաշտերը դեռ արևոտ էին: Ու այնքան զարմանալի էր դա՝ այնտեղի արևոտ տները, դաշտերը և այստեղի լուսավոր ստվերը, հանդարտությունը, իրիկնամուտը:

Երբ ջրաղաց հասանք, փոքր հորեղբայրս սկսեց իջեցնել պարկերն ու ներս տանել: Սարի ստվերի մեջ չէր առնվել ջրաղացը, և այստեղ արև էր, շոգ: Ցանկացա օգնել փոքր հորեղբորս, բայց նա ծիծաղեց:

— Քաղաքացի,— ասաց,— քաղաքացի, մայրով անցի,— ու նորից ծիծաղեց:

Մեծ հորեղբայրս մի կողմ էր քաշվել և լուռ հետևում էր եղբոր գործին: Եվ երբ փոքր հորեղբայրս ներս տարավ ցորենի վերջին պարկը ու արձակեց եզները՝ մեծ հորեղբայրս նրան կանչեց, ձեռքը ուսին դրեց ու բեղի տակ ժպտաց:

— Առանց քեզ ի՞նչ էի անելու,— ասաց նա,— կարգին տղամարդ ես՝ գործից չես վախենում:

Փոքր հորեղբայրս շիկնեց և այդ բանը թաքցնելու համար շունչը պահե՞ց, թե՞ ատամները սեղմեց, ու ճար չգտնելով՝ ծիծաղեց:

— Դե լավ, ապեր,— ասաց նա,—շատ մի գովի՝ կգոռոզանամ:

Ջրաղացին մի սայլ մոտեցավ: Հարևան գյուղից էին: Հայրն էր, որդին և աղջիկը: Ես նրանց մի քիչ ճանաչում էի, որովհետև հարևան գյուղացու տղան փոքր հորեղբորս հետ մոտ էր և մեր տանը հաճախ էր լինում: Փոքր հորեղբայրս որոշ ժամանակ լուռ կանգնած նոր ժամանածներին էր նայում: Աղջկան էր նայում: Հարևան գյու-

ղացու աղջիկը գեղեցիկ էր, ու ես հիշեցի, որ նրա ու փոքր հորեղբորս մասին ականջիս ինչ-որ բաներ էին հասել: Մեծ հորեղբայրս խիստ նայեց եղբորը և նրանց մոտեցավ: Ընդգծված հարգանքով և ընդգծված արժանապատվությամբ նա բարևեց հարևան գյուղացուն, որը ճիշտ նույն ձևով էլ պատասխանեց: Երկուսով մի կողմ քաշվեցին և սկսեցին զրուցել: Փոքր հորեղբայրս ջերմ բարևեց հարևան գյուղացու տղային և օգնեց պարկերը ներս տանել: Աղջկա կողմը նա նույնիսկ չնայեց: Եվ ոչ էլ աղջիկն էր նրան նայում: Երկուսն էլ կարծես իրար չէին տեսնում: Բայց փոքր հորեղբայրս հո չէր աշխատո՛ւմ, հո չէր աշխատո՛ւմ:

— Կրակի կտոր է,— ասաց հարևան գյուղացին՝ փոքր հորեղբորս ցույց տալով:

— Հա,— իբր անտարբեր ասաց մեծ հորեղբայրս,— չես ասի, թե մերը հենց նոր դատարկեց-պրծավ:

— Մենա՞կ,— հարցրեց հարևան գյուղացին:

— Ի՞նչը՝ մենակ,— չգիտես ինչու չհասկացավ մեծ հորեղբայրս:

— Մենա՞կ դատարկեց,— հարցրեց հարևան գյուղացին:

— Բա կթողնե՞ր, որ ես մի բան անեի,— ասաց մեծ հորեղբայրս ու ժպտալով փոքր եղբորը նայեց,— նամուսով է:

— Ճիշտ է,— ասաց հարևան գյուղացին:

— Աղջիկդ լավ մեծացավ,— ասաց մեծ հորեղբայրս,— դրա սիրունությունը մեր էս չորս գյուղերից ոչ մի աղջիկ չունի:

— Հա,— հիմա արդեն հարևան գյուղացին խոսեց, իբր անտարբեր:

— Երևի շուտով պսակես,— ասաց մեծ հորեղբայրս:

— Չէ,— ասաց հարևան գյուղացին,— ինչի՞ շտապենք: Մեր ուզածն ի՞նչ է: Մեր ուզածն էն է, որ մեր փեսան աշխատասեր, կրակի կտոր, նամուսով ըլնի: Մեկ էլ՝ հարգված ընտանիքի տղա ըլնի:

— Շատ ճիշտ ես,— ասաց մեծ հորեղբայրս,— աստված տա դուք ձեր էդ մինուճար աղջկան բախտավոր տեսնենք:

— Հույս ունենք,— ասաց հարևան գյուղացին, և այստեղ ողջ զրույցի ընթացքում առաջին անգամ ես նրա դեմքին ժպիտի պես մի բան նկատեցի:

— Գնանք մի կտոր հաց ուտենք,— առաջարկեց մեծ հորեղբայրս և ճիշտ նույն ժպիտով նրան նայեց:

— Գնանք,— համաձայնեց հարևան գյուղացին:

Ջրաղացից քիչ հեռու, ծառերի ստվերում սեղան և աթոռակներ կային: Երբ նրանք նստեցին, իսկույն հայտնվեց հարևան գյուղացու աղջիկը: Նա ինչ-որ բանով մաքրեց սեղանը և ձեռքի փաթեթը խոտերի մեջ բացելով՝ սկսեց միջից ուտելիքներ հանել: Փոքր հորեղբայրս նույնպես մի փաթեթ ձեռքին՝ մոտեցավ սեղանին:

— Տուր մե՛ծ աղջկան,— առանց փոքր հորեղբորս նայելու ասաց հարևան գյուղացին,— սեղան գցելը տղամարդու գործ չի:

Եվ այստեղ առաջին անգամ աղջիկն ու փոքր հորեղբայրս իրար նայեցին, ու ես տեսա, թե ոնց են նրանք իրար նայում:

Հետո ես ջրաղացում եղած իմ հասակակիցների հետ լողացա գետում: Լավ օր էր: Տաք, արևոտ: Եվ, որ ամենակարևորն էր, արևը չէր վառում, չէր կծում: Մի տեսակ շոյելով էր տաքացնում, փափուկ արև էր: Քիչ հետո փոքր հորեղբայրս և հարևան գյուղի նրա ընկերները մեզ միացան, ու ես հպարտությամբ էի նայում, թե ինչպես է նա լողում: Գետափին եղած մեծահասակները որոշ ժամանակ նրա լողանալուն էին հետևում: Իսկ փոքր հորեղբայրս այդ ամենը կարծես չէր նկատում: Ինձ թվում է՝ իսկապես չէր նկատում: Նա սիրելով էր լողանում: Ոչ թե սիրով, այլ սիրելով: Սիրելով օդը, ջուրը, գետը՝ իր ափերով, սոթլիկ, մամռակալած քարերով, կյանքը, որի մեջ էր ինքը, իր ապրելը:

Երբ մենք գետից դուրս եկանք, ես տեսա, որ ծառերի տակ իսկական քեֆ է սկսվել: Մեծ հորեղբորիցս ու հարևան գյուղացուց բացի այնտեղ ջրաղացպանն էր հայտնվել ու մի երեք գյուղացի: Արևն արդեն մայր էր մտել ու այստեղ՝ ջրաղացում էլ, արդեն իրիկուն էր: Մենք մի փոքրիկ խարույկ վառեցինք և կանաչների մեջ բացեցինք մեր սեղանը: Լավ սոված էինք: Փոքր հորեղբայրս խարույկի ածուխները մի կողմ քաշեց, կարտոֆիլներ նետեց այնտեղ ու մոխիրով ծածկեց: Աղջիկը սպասարկում էր ծառի տակ նստածներին:

— Արի,— կանչեց նրան եղբայրը,— արի, մի կտոր հաց կեր:

Աղջիկը անվճռական հորը նայեց: Հայրը ինչ-որ բան ասաց, ու նա մոտեցավ մեզ: Փոքր հորեղբայրս լավաշով, ձվով, կանաչիով մի մեծ դուռում սարքեց և մեկնեց աղջկան, սակայն աղջիկը հրաժարվեց.

ասաց, որ մեծ է, շատ է մեծ ու ինքը այդքան ուտել չի կարող: Փոքր հորեղբայրս շարունակում էր դդումը նրան պարզած պահել, և աղջիկը կրկնեց, որ շատ է մեծ և ինքը այդքան ուտել չի կարող: Փոքր հորեղբայրս ձեռքը ետ չէր քաշում: Աղջիկը սկսեց կամաց-կամաց կարմրել, բայց մենք և աղջկա եղբայրը մեզ այնպես էինք պահում, իբր ոչինչ չէինք տեսնում: Աղջիկը սրտնեղած վերցրեց դդումը և սկսեց ուտել: Հարևան գյուղացին կանչեց որդուն, որ նա երգի և ուրախացնի իրենց: Որդին մի քանի երգ երգեց, և այդ ընթացքում բոլորը լուռ էին ու վերջացնելուց հետո ոգևորված ծափահարեցին: Շատ լավ ձայն ուներ հարևան գյուղացու տղան և շատ լավ էլ երգում էր:

— Հազար ապրես,— ասում էին բոլորը, երբ նա վերջացնում էր, — հազար-հազար ապրես,— ու խնդրում էին, որ մեկն էլ երգի:

Երբ բոլորովին մթնել էր, ջրաղացպանը ներսից մի երկու լամպ բերեց, ու նրանք շարունակեցին ուրախանալ:

Մենք թողել էինք խարույկն ու կամաց-կամաց մոտեցել մեծերի սեղանին: Այնտեղ ավելի հետաքրքիր էր: Չէինք խանգարում, մեր ներկայությունը զգացնել չէինք տալիս, բայց միաժամանակ ասես մասնակցում էինք նրանց զրույցին, ուրախությանը: Հարևան գյուղացու տղան շարունակում էր երգել, և, չգիտես ինչու, երբ նույնիսկ ուրախ, շատ ուրախ երգ էր երգում, որևէ մեկը անպայման ախ էր քաշում: Այնպես անձկալի, կարոտով, դառնացած: Ամեն երգի ժամանակ որևէ մեկը անպայման հառաչում էր: Մյուսները այդ բանի վրա ուշադրություն չէին դարձնում, բայց ես զարմանում էի: Չէի հասկանում, թե այդ համատարած ուրախության մեջ ի՞նչն է վշտացնում նրան: Ցանկանում էի այդ մասին հարցնել փոքր հորեղբորս, բայց նա չկար: Ես նայեցի ու տեսա, որ նա ու աղջիկը նստած են խարույկի մոտ Սուսուփուս, կողք-կողքի, ամեն մեկը մի կողմ նայող անշարժ հայացքներով: Խարույկը անհավասար բոցկլտում էր, ու վերուվար անող լեզվակները լուսավորում էին մեկ նրանց աչքերը, մեկ՝ ճակատները, հետո՝ այտերը կամ շուրթերը, հետո՝ ամբողջ դեմքը միանգամից: Եվ ինձ հանկարծ այնպես թվաց, որ այդ նրանք են բոցկլտում: Խարույկը ոչ մի կապ չունի: Այդ նրանք են վառվում մութի մեջ՝ բոցերի անհավասար լեզվակներով:



ԿԱՐՈ ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ

# Ամենամեծ հրաշքը

Եկ մտածենք՝ ո՞րն է հրաշք.
Արդյոք ծա՞ռն այս խորհրդավոր,
Որ մի անշունչ, եղունգի չափ
Կորիզից է ծնվել մի օր:

Թե՞ այն թռչունը դայլայլող,
Որ ճչում է, երգում, լալիս,
Այն թռչունը, որ փոքր ու պաղ
Մի ձվից է աշխարհ գալիս:

Գուցե առո՞ւն ջինջ ու բարակ,
Որ ձյունի մեջ լեզուն բացում
Ու զոր-գիշեր քաղցր ու զվարթ
Այն թռչունին է ձայնակցում:

Իսկ գուցե և մանկի՞կը այն,
Որ ողջ օրը իրենց բակում
Արևի ու ձկնիկի հետ
Խաղ է անում այդ առվակում:

# Ամեն մեկն իր գործն ունի

Ասեք՝ ո՞րն է գործը ցողի,
Այն, որ ամեն առավոտ վաղ,
Աստղ ու ամպից իջնի ծառին
Ու այդ ծառին մնա երկար:

Ասե՛ք ո՞րն է գործը շողի,
Այն, որ մի կերպ կարողանա
Վարագույրը պատռել ամպի,
Իջնել շաղոտ հողի վրա:

Հողի գործը ո՞րն է, գիտե՞ք,
Այն, որ ճիգով մի անանուն՝
Այդ շողն ու ցողն իրար խառնած՝
Տա իր կանաչ խնձորենուն:

Իսկ ծառի՞ գործը՝
Որ ճիգն այդ,
Այդ շողն ու ցողը միացնում
Ու ճյուղերին կարմիր, կարմիր
Խնձորների է վերածում:



ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ

# Ճապիկը

Յոթ գունավոր
Մատիտ առած՝
Անցա դաշտով
Համատարած:

Դաշտը դարձավ
Յոթգույնանի,
Ճապիկ հագավ
Միածանի:

Այդ շապիկը
Ես էլ հագա,
Դարձա գարնան
Նման տղա:

Քամին էլ է
Ուզում հագնել
Եվ փորձում է
Ինձնից գնել:

Ասում է՝ քո
Ճորի տեղակ
Կնվագեմ
Պարեղանակ:

# Առուն

Առուն գալիս է,
Գնում է առուն,
Նրանից երգի
Դասեր եմ առնում:

Առուն գալիս է,
Գնում է առուն,
Նրանից վազքի
Դասեր եմ առնում:

Առուն գալիս է,
Գնում է առուն,
Նրանից փայլի
Դասեր եմ առնում:

Առուն գալիս է,
Գնում է առուն,
Տեսնես ինձանից
Ի՞նչ է սովորում:

Նկարը՝ ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

ՈՒԻԼՅԱՄ ՍԱՐՈՅԱՆ

# Ծիծաղող Սամը

Նկարը՝ ԳՐԻՇԱ ԹՈՐՈՍՅԱՆԻ

Տասնհինգ տարի առաջ մեր քաղաքում մի տղա էր ապրում, որին «Ծիծաղող Սամ» էինք ասում: Այդ տղան առավոտից իրիկուն ծիծաղում էր: Նա այն ծայրահեղ զգայուն տղաներից էր, որ վախենալով ամեն ինչից, փորձում էր ծիծաղել ամեն ինչի վրա, որի պատճառով ինչ փորձանքների մեջ ասես ընկնում էր: Ու, ինչ էլ անելիս լիներ, մեկ է, բան չէր ստացվում:

Մեր քաղաքում շատ տղաներ մահացան դեռ քսան տարին չբոլորած: Սամը նրանցից էր ու, ինչքան նրան գիտեի, մեռնելու պահին էլ երևի ծիծաղել էր կամ ծիծաղել էր այնքան, մինչև գլխի էր ընկել, որ ջախջախվում է ամբարձիչի տակ: Սամը միշտ վախենում էր այդ ձևով մեռնելուց և համակրանքով էր վերաբերվում իրեն ատող մարդկանց: Բայց նա սայթաքեց, ընկավ ամբարձիչի տակ և ջախջախվեց:

Սամն այդ ժամանակ տասնվեց տարեկան էր: Իսկ ես չորս տարի կլիներ, ինչ նրան ճանաչում էի:

Սամին առաջին անգամ տեսա «Իրվինգ Հերալդի» տպարանում՝ Բազ Մարտինի հետ աստիճաններով իջնելիս: Սիրող բռնցքամարտիկ ու շատախոս Բազ Մարտինը մամուլի տարածման տնօրենն էր: Նա զոհվեց ավտովթարից 1924 կամ 1925 թվականին՝ քսանվեց տարեկանում: Բազը Սամին ասաց՝ սպասիր մինչև արտակարգ համարի լույս տեսնելը: Եվ Սամը սկսեց սպասել այնպես, կարծես ըսպասելը նրա համար մեծ իրադարձություն լիներ:

Նա վախեցած նայում էր շուրջը՝ իտալացի, ռուս, հայ անծանոթ տղաներին: Հետո սկսեց աչքերը ահաբեկված սևեռել սև, հսկայական տպագրիչ մեքենային և աստիճանաբար խուճապահար տեսք առավ:

Չնայած ես ինը-տաս տարեկան էի, իսկ Սամը երևի մեկ-երկու տարով մեծ կլիներ ինձանից, ես հասկանում էի նրան: Այս աշխարհում նա էլ մեզ նման թշվառ ու խեղճ տղա էր: Նաև՝ ձախորդ: Գիտեի, նա միշտ այդպիսի վիճակում էր եղել:

Իսկ ես ինձ վատ էի զգում նրա պատճառով և շատ էի ուզում քաջալերող բան ասել, բայց չէի կարողանում: Ես ուզում էի ասել՝ սպասիր, հանգիստ կաց, մի հուզվիր, մի վախեցիր: Հանգիստ պահիր քեզ...

Բայց չկարողացա ոչինչ ասել:

Այդ տղայի աչքերում տագնապի ու ցասման փայլ կար, և ինձ թվաց՝ ուր որ է կարտասվի:

Դրա փոխարեն Սամը միշտ ծիծաղում էր: Նա փոքրիկ ու նյարդային հրեա էր: Մեծ, կտուցանման քիթ ուներ, սև, խիտ մազեր, մաշկին՝ անթիվ-անհամար խալեր հաստ շրթունքներ, անսովոր, հիմար ականջներ: Կյանքումս նրա պես տգեղ տղայի չէի հանդիպել, բայց միևնույն ժամանակ նրա դեմքին ու կազմվածքին ողբերգական ու սրտաշարժ բան էր նկատվում: Ձեռքերը կարճ էին: Մատները նույնպես կարճ էին ու հաստ: Բոլորովին ուսեր չուներ, ոտքերը չափազանց մեծ էին:

Հուլիս ամիսն էր, և Սամը մեզ նման ոտաբոբիկ էր ման գալիս: Նրան առաջին անգամ տեսնելիս կարելի էր ասել՝ ահա խեղճ, անտիկ ստրուկի մարմինը՝ չարչարված, քաղցից հյուծված, հիվանդ, վիրավոր, շնորհազուրկ, անհավանական, աշխարհից վտարված մեր Տիրոջ մարմինը:

Առաջին օրը ես նրա հետ չխոսեցի: Ճիշտն ասած՝ մի քիչ էլ վախեցա այդ տղայից: Ավելի ճիշտ՝ ոչ թե նրանից վախեցա, այլ այն զոհից, որ նրա մարմնով էր մատուցվելու: Անօգնական, անմեղ, ահավոր դաժանությունների և մահացու մոլորությունների վկան էր իմ առջև կանգնած:

Իսկ ես հետևում էի նրան: Սամը ոնց որ կորսված լիներ՝ բոլորովին վերացած՝ ոչ թե ուղղակի տպագրասենյակից, նաև՝ աշխարհից, ժամանակից, տարածությունից, կյանքից: Նրան կարծես հետապնդում էր իր արյան բնազդային, ցեղային հիշողությունը, որից նա խուճապահար էր եղել. հեռացիր, դուրս արի, ուրիշ տեղ գնա, խառնվիր, վազիր, մի ապրիր սըրանց հետ: Քեզ կսպանեն:

Եվ ես լսեցի, թե նա ինչպես էր ճիգ անում խոսելու Բազ Մարտինի հետ: Բայց, ճիշտն ասած, նա չէր էլ կարողանում խոսել: Սամը չէր կակազում, բայց երբ շուրթերն ու բերանն սկսում էին բառ կազմել, կաթվածահար էին լինում և նրա մունջ բերանին միայն բառի ստվերն էիր տեսնում:

— Ես որտե՞ղ պետք է սպասեմ,— Բազ Մարտինին հարցրեց Սամը: Բազ Մարտինը ազնիվ տղա էր ու ֆիզիկապես շատ ուժեղ: Սովորաբար նա քոթակում էր թոնկից փախած տղաներին ու բավարարվում էր դրանով՝ չէր ճնշում վախեցած երեխային: Ճիշտ է, նա ամերիկացի էր, բայց շատ էր տարբերվում մեր քաղաքի մյուս ամերիկացիներից: Տասնհինգ տարի առաջ ամերիկացին արհամարհում էր ուրիշ ցեղախմբին պատկանող մարդկանց, որովհետև իրենք իրավասու էին, իսկ մյուսները՝ ոչ: Իսկ Բազ Մարտինը հրաշալի տղա էր և լայն մտահորիզոն ուներ: Նրան չէր հետաքրքրում, թե ինչ ազգի ես պատկանում. միայն թե խելքը գլխին տղա լինեիր, իսկ եթե չափն անցնում էիր, մյուս ամերիկացիների պես չէր հայհոյում քո ցեղը: Ուղղակի մի երկու հատ ապտակում էր ու վերջ:

Այդ պատճառով Բազը ազնվորեն վարվեց Սամի հետ, թեև շփոթվեց նրա տված հարցից:

— Կանգնիր այստեղ, սպասիր,— ասաց նա:— Տեղ չգնաս: Հինգ րոպե չի քաշի, թերթի համարը լույս կտեսնի: Քեզ տասը հատ կտամ ու կասեմ, թե ինչ բղավես:

Սամը ծիծաղեց, մնաց կանգնած իր տեղում: Նա սկսեց շուրջը նայել՝ մեկի հետ խոսելու հույսով և հույն Նիք Կյուրոսին գտնելով, ասաց.

— Երևի դու էլ ես թերթ ծախելու, հա՞: (Հետո ծիծաղեց):

Կյուրոսը պատասխանեց.

— Ի՞նչ իմանաս:

Եվ ծիծաղեց: Նա հավանաբար ամենամեծամեծամեղձոտ լրագրավաճառն էր մեր քաղաքում: Ասում էր. ամեն ինչ և բոլորին ու մերթ ընդ մերթ նրան կարելի էր արտասվելիս տեսնել՝ բոլորովին առանց պատճառի:

— Ես կյանքումս ոչ մի անգամ թերթ չեմ ծախել,— ասաց Սամը:— Երևի գոռալու եմ, հա՞... (նորից ծիծաղեց):

Եվ Կյուրոսն ասաց.

— Ոչ:

— Իսկ դու գոռո՞ւմ ես,— հարցրեց Սամը: (Այս անգամ նա շատ երկար ծիծաղեց, և Կյուրոսը վախեցած նրան նայեց):

— Այո,— ասաց Կյուրոսը:

— Իսկ... ո՞նց ես գոռում,— հարցրեց Սամը:

— Ուղղակի բերանս բացում եմ և բղավում,— պատասխանեց Կյուրոսը:

— Երևի բղավում ես՝ թերթ ծախեմ, թերթ ծախեմ, թերթ ծախեմ, հա՞... Երեկոյան լուրեր, երեկոյան լուրեր... Ու՝ թե ինչ լուրեր են տպված, հա՞... Ախր ձևը չգիտեմ, է՜: Ուղղակի մայրս ասաց՝ մեզ փող է պետք, դրա համար եկա այստեղ: Իսկ դու շա՞տ փող ես վաստակում...

— Չէ,— ասաց Կյուրոսը:

— Դու բոլորովի՞ն փող չես աշխատում,— ասաց Սամը:

— Եթե երկու լրագիր ծախես, հինգ սենթ կաշխատես,— ասաց Կյուրոսը,— յուրաքանչյուր երկու թերթից՝ հինգ սենթ:

— Իսկ եթե շատ աշխատե՞մ, քո կարծիքով քանի՞ հատ կծախեմ,— հարցրեց Սամը:

— Երևի տասը հատ,— պատասխանեց Կյուրոսը:

— Դա կանի քսանհինգ սենթ, հա՞,— ասաց Սամը:

— Այո,— ասաց Կյուրոսը:

Հետո տպագրիչ մեքենան սկսեց աշխատել, և Սամն ասաց.

— Նայիր... հա՜, հա՜, հա՜, հա՜..

— Ի՞նչ է պատահել,— հարցրեց Կյուրոսը:

— Հա, հա, հա,— ասաց Սամը:— Նայիր, նայիր...

Այդ օրվա լրագրի վերնագիրը պատերազմի մասին էր: Բազ Մարտինը Սամին տասը հատ լրագիր տվեց, պատվիրեց, որ այսպես բղավի վերնագիրը՝ «Դաշնակիցները հարձակվում են մեծ ուժերով»... «Դաշնակիցները հարձակվում են մեծ ուժերով...»:

Իսկ մենք մեր լրագրերը վերցրինք, վազեցինք քաղաք: Իմ անկյունը «Փոստային ծառայություն» գրասենյակի մոտ էր: Եթե ամենաարագ վազողն ես ու հրմշտողը, ուրեմն լրագիր ծախելու ամենահարմար անկյունը քոնը կլինի: Իմը լավագույնից հետո վեցերորդն էր:

Եթե առաջին անգամ էիր լրագիր ծախում, քեզ պատվիրում էին թափառել ամբողջ քաղաքով մեկ և կաշվից դուրս գալով էլ լինեք, պիտի վաճառեիր:

Սամը չթափառեց քաղաքում: Ուղղակի



վազում էր՝ ժամեր շարունակ: Տղան կաշից դուրս էր գալիս լավագույն լրագրավաճառի անուն հանելու համար: Ուզում էր լավ հրմշտող լիներ: Ուզում էր հաճելի լինել Բազ Մարտինին և «Իրվինգ Հերալդի» հրատարակիչներին: Նա ուզում էր մի քիչ փող տանել տուն՝ իր մայրիկին: Տնեցիք փողի խիստ կարիք ունեին, և նա ուզում էր իր լրագրերը վաճառել և մի քանի պեննի տանել տուն: Սամը քըրքըջում էր, բղավում, ոնց որ մի տեղ պիտի հասներ՝ շատ ճիշտ ժամանակին:

Նա շատ ծիծաղելի էր, և ոչ մեկը չէր կարողանում իրեն զսպել, մի քիչ ձեռ չառնել: Իտալացի երեխաները մեծ բավականություն էին ստանում Սամին բազմաթիվ հարցեր տալով ու ձեռ առնելով, հետո նրան հրում էին մարդկային հոսանքին հակառակ ուղղությամբ ու լսում, թե ինչպես էր նա ծիծաղում՝ ինքն էլ չիմանալով ինչու: Նրանք սպասում էին, որ Սամը կամ բարկանա ու կռվի, կամ լաց լինի, բայց նա մի գլուխ ծիծաղում էր ու ծիծաղում: Իսկ մի անգամ իտալացի տղաները իջեցրին նրա վարտիքը, տպագրական ներկ քսեցին հետույքին, բայց նա դարձյալ ծիծաղեց: Իտալացի երեխաները չգիտեին ինչպես վարվեն նրա հետ:

Սամը՝ խենթ երեխաների ամբոխով շըրջապատված, փորձում էր մաքրել ներկը: Հետո ասաց.

— Դուք ինձ վրա ենրկ քսեցիք: Հա, հա, հա, հա... Տեսեք, չի մաքրվում:

Ես անհավոր վատ էի զգում ինձ, տեսնելով, թե նա ինչքան խորն էր վիրավորված ու սարսափած: Բայց նա շատ էր ուզում նրանց հետ ընկերություն անել:

Մի ամբողջ շաբաթ երեխաները լավ զվարճացան՝ Սամին ձեռ առնելով և նրա ծիծաղը լսելով: Հետո երեխաները սկսեցին բարկանալ. նրա ծիծաղը առաջվա պես զվարճալի չէր: Ախր այնքան էլ ճիշտ չէր, որ նա ամեն ինչի վրա այդպես քահ-քահ ծիծաղում էր:

Մի օր Սամը ցեմենտած աստիճաններով իջնելիս սայթաքեց ընկավ, վիրավորվեց: Բոլորը վազելով մոտեցան, նույնիսկ նրա նկատմամբ ամենանկոպիտ տղան ուզեց բարի լինել, որովհետև Սամի բաճկոնը պատառոտվել էր, ձեռքը՝ քերծվել, արյուն էր գալիս, իսկ նա տեղից ցատկեց և սկսեց ծիծաղել:

— Ես ընկա աստիճաններից,— ասաց նա ու՝ հա, հա, հա, հա... Եվ բոլորը, նույնիսկ ամենաբութ տղան, զայրացան նրա վրա: Բոլորը հարցնում էին իրար՝ ի՞նչ գրողի ցավ է տարել սրան... Եվ որոշ ժամանակ անց ոչ մեկը չուզեց մոտենալ կամ խոսել նրա հետ, և Սամը բոլորովին միայնակ մնաց տպարանում:

Սովորաբար ամեն օր, աշխատանքի գալիս փորձում էր ընկերական լինել բոլորի հետ, բայց չկարողանալով կարգին խոսել, միշտ ծիծաղում էր:

Մի օր լրագրի առաջնորդող հոդվածը օդային աղետի մասին էր: Գիշերը հինգ հոգի զոհվել էին, որից երկուսը՝ երեխաներ: Սամը՝ քաղաքի փողոցներով վազելով, բղավում էր այդ լուրն ու ծիծաղում: Նա մոլեգին վազքով պտտվում էր իմ անկյան շուրջն ու բղավում:— Հինգ հոգի զոհվել են ինքնաթիռային աղետի ժամանակ... Հինգ հոգի զոհվել են... հա, հա, հա...

Ես կանգնեցրի նրան: Ճիշտն ասած՝ ոչ սիրում էի, ոչ ատում այդ տղային: Խոսքը մեր մեջ, ուզում էի սիրել, բայց չէր ստացվում. դա անհնար բան էր: Ամեն ինչի վրա այդպես ծիծաղե՞ս... Ո՞նց կլինի:

— Սպասիր, ինչի՞ վրա ես այդպես ծիծաղում:

Մի բան, նրա մեջ ո՞նց որ գունդուկծիկ եղավ:

— Իսկ ես չեմ ծիծաղում,— ասաց Սամը:

Ես հետո իմացա, թե ինչ ահավոր բան էր կատարվում այդ տղայի հետ: Բանն այն էր, որ նա իրոք չէր ծիծաղում: Թվում էր, թե ծիծաղում է, բայց իրականում լաց էր լինում: Սիրտը կտոր-կտոր էր լինում ամեն ինչի ու բոլորի համար, և նա լաց էր լինում: Սամը ծիծաղելով էր արտասվում:

— Լսիր,— ասացի:— Դու հո գիժ չե՞ս: Մարդիկ զոհվել են ինքնաթիռային աղետից, իսկ դու ծիծաղում ես:

— Ոչ:

— Ուրեմն, տխրո՞ւմ ես:

— Իհարկե:

— Ես էլ դա էի ուզում իմանալ:

Նա լրագրերը թափահարելով վազեց փողոցով, իսկ իմ դեմքը ողողվեց արտասուքներով, և ես ինձ մահու չափ մեղավոր զգացի:

Սամը մինչև տասնինը տարեկան դառնալը լրագիր վաճառեց:

Հետո նա աշխատանքի ընդունվեց ապրանքատար գնացքների և պահեստավորման ընկերությունում: Շաբաթական ութինը դոլլար աշխատավարձ էր ստանում: Չգիտեմ, թե այդ պահեստում նրա գործն ինչ էր, բայց ինձ մի բան էր հայտնի՝ Սամը ամբարձիչն էր աշխատեցնում: Երկու բանվորները էին նրան ծաղրելու համար այդ գործը առաջարկել՝ տեսնելով, թե նա ինչքան շատ է վախենում այդ կառուցվածքի մեքենաներից: Սամը ուզեցել էր նաև բանվորներին դուր գալ: Իմ կարծիքով նա ծիծաղելով էր աշխատեցրել մեքենան:

Հիմա չեմ կարող մանրամասն պատմել, թե այդ դեպքը ինչպես էր կատարվել, բայց մի օր «Իրվինգ Հերալդում» կարդացի, որ Սամը ջախջախվել էր՝ ընկնելով ամբարձիչի տակ, ու վայրկենապես մահացել: Բոլորը պնդում էին, որ իր մեղքով է եղել: Սամը շատ է վախեցել, երբ ամբարձիչը ճիշտ տեղում չի կանգնել, իսկ բանվորները ծիծաղել են նրա վրա, և խեղճ տղան փորձել է դուրս գալ ամբարձիչի տակից, բայց չի հասցրել:

Այս աշխարհում նա ընդամենը տասնինը տարի ապրեց, և թվում էր՝ այդ բոլոր տարիներին նա անընդհատ ծիծաղում էր, մինչդեռ նա իր կյանքի հենց առաջին օրվանից լաց էր եղել տասը դար շարունակ՝ մինչև տասնհինգ տարի առաջ՝ իր մահկանացուն կնքելը:

Անգլերենից թարգմանեց՝
ՎԱՆԻԿ ԱՎԵՏԻՍՅԱՆԸ

ՂՈՒԿԱՍ ՍԻՐՈՒՆՅԱՆ

# Հավն ուզում էր դառնալ քնարահավ

Ձեզ ծանո՞թ է Սնուկ հավը,
Այն, որ կուտ է ուտում մի պարկ,
Բայց ձու ածում տարին մի հատ,
Քուջուջ անում այստեղ, այնտեղ,
Պոկոտում է լոլիկ, պղպեղ,
Որ ինչքան էլ ասես՝ քշա,
Օգուտ չունի, վրա կտա,—
Այ, այդ հավը
Որոշում է մի օր դառնալ
Ոչ այս, ոչ այն՝
Քնարահավ…
Իսկ ի՞նչ էր պետք դրա համար,
Չմտածեց հավը երկար.
Ելավ, ընկավ
Ախոռ, մսուր,
Բակ ու կտուր,
Ինչքան թռչուն ու գազան կար,
Թևը մեկնեց, կոտրատվելով
Ներկայացավ՝
— Քնարահավ:

Իսկ աղվեսը չհավատաց,
Երբ իր բնում վայելում էր
Խեղճ Սնուկին,
Ասաց ձագին.
— Հապա փորձիր,
Ոնց որ հավի միս չլինի՞…

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ





ԽԱՉԱՏՈՒՐ ՄԱՐԳԱՐՅԱՆ

Նա մեր թաղային թիմի լավագույն դարպասապահն էր: Բոլոր խաղացողներն ունեին իրենց փոխարինողները, իսկ Հրանտիկը… Հրանտիկն անփոխարինելի էր: Կանգնում էր դարպասում՝ մեծ-մեծ ձեռնոցները հագին, մեծ երիզով գլխարկը գլխին, իսկ և իսկ «փոքրիկ գյուղացին», կանգնում էր հպարտորեն, ու երբեք մեր թաղը չէր պարտվում:

Գյուղն ուներ իր ֆուտբոլային թիմերը՝ վերին թաղ, ներքևի թաղ, կալերի թաղ, գործարանի թաղ:

Գարնան հենց սկզբին, երբ ձյունը նոր-նոր սկսում էր հալվել, Հրանտիկը հավաքում էր իր թաղի երեխաներին ու գնում ֆուտբոլի դաշտ: Ձյունը մաքրում էին, կարգի բերում ստադիոնը, և մի երկու օրից սկսվում էին ֆուտբոլի խաղերը:

Այդ օրը ընկերական հանդիպում էր երկրորդ և երրորդ դասարանցիների միջև: Դեռ չէր վերջացել առաջին խաղակեսը, երբ դաշտ լցվեցին բարձր դասարանցիները: Նրանց հետ էր նաև վեցերորդցի Դմբուզ Հակոբը, որը եկավ, կանգնեց դաշտի կենտրոնում և կուրծքը ցցեց.

— Մենք ենք խաղում…

Երեխաները շփոթվեցին, իրար անցան:

Դմբուզ Հակոբը խլեց գնդակն ու, փոխանցելով Արշոյին՝ առաջ վազեց:

— Տուր գնդակը, տուր գնդակը,—կանչեցին փոքրերը:

— Սրանց տեսեք, գնդակ են ուզում: Մենք ենք խաղում և՝ վերջ:

Դմբուզ Հակոբը «համբավավոր» տղա էր, գյուղի բոլոր ծեծկռտուքների ակտիվ մասնակիցը: Նրա հետ հեշտ չէր գլուխ դնելը:

— Տուր գնդակը,— կանչում էին փոքրերը:

Արշոն շրջվեց դեպի կանչողը և ծամածռություններ արեց:

— Ա, «փոքրիկ գյուղացին» էլ է այստեղ,— տեսնելով Հրանտիկին՝ ասաց Հակոբը,—հենց իմ «կամանդից» կխաղաս կկանգնես մեր դարպասում:

— Գնդակը տուր,— կտրուկ ասաց Հրանտիկը:

— Չեմ տա…

— Գնդակը տուր… Մենք խաղում էինք, ինչո՞ւ խանգարեցիք:

— Ի՞նչ,— զայրացավ Դմբուզ Հակոբը,— էդ ինձ ես վրա քշո՞ւմ:

— Հա, քեզ եմ ասում, ետ տուր գնդա-




կը:

— Մի անգամ էլ ասա:

Հրանտիկը կրկնեց: Դմբուզը գնդակով անպաշտպանելի խփեց Հրանտիկի դեմքին: Ցավեց: Բայց նա զսպելով իրեն՝ կռացավ, վերցրեց գնդակն ու պարզեց տիրոջը:

— Վերցրու, Կարեն:

Դմբուզը կարծում էր, թե Հրանտիկը պիտի տզզոցը գցի, բայց այդպիսի բան չտեսնելով՝ թողրեց գնդակն ու վազեց, ընթացքի հետ գրպանից հանելով փոքրիկ ծալովի դանակը՝ խրեց ռետինե գնդակի մեջ: Լսվեց ֆսսոց:

— Ինչո՞ւ արեցիր,— Հրանտիկը մոտ վազեց:

Դմբուզը շրջվեց ու փախավ: Հրանտիկը վերցրեց գնդակը, որը կարծես շնչավոր էր ու հիմա անշնչացել է... Երեխաները շրջապատեցին Հրանտիկին: Անշնչացած գնդակը ձեռքից ձեռք անցավ, բոլորի զայրացած դեմքերին ասես նույնն էր գրված.

— Դմբուզ, մեծանանք, մենք քեզ ցույց կտանք...

# ՏԵՂԱՆՈՒՆԸ ՊԱՏՄՈՒՄ Է



ՀԱՅԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ

## ԱՊԱՐԱՆՔ

Վանա ծովակից հարավ-արևմուտք, Մամրտանք գավառում, Ապարանք անունով մի գյուղ է եղել: Հին ժամանակներում այս գյուղում մի իշխան էր ապրում: Սա աչքը տնկում է գյուղի գեղանի աղջիկներից մեկին, որի անունը Գոհար էր: Բայց աղջիկն ուրիշին էր սիրում և համառորեն մերժում էր իշխանին: Գոհարի սիրած տղան պանդխտության մեջ էր: Աղջիկը հույս ուներ, որ նա շուտ կվերադառնա, սակայն օրերն ամիսներ էին դառնում, ամիսները՝ տարիներ, իսկ տղան չէր վերադառնում: Եվ Գոհարը, ստիպված, ժամանակ շահելու համար իշխանին ասաց. «Եթե ուզում ես, որ ես քո կինը դառնամ՝ մի այնպիսի պալատ կառուցիր, որ թագավորականից չտարբերվի»: Աղջկա պատասխանն ուրախացրեց իշխանին, և նա սկսեց ապարանքի շինությունը:

Մի քանի տարի հետո, երբ ապարանքը արդեն պատրաստ էր, պանդխտությունից վերադառնում է Գոհարի սիրած տղան: Ծնողներից լսելով ապարանքի պատմությունը և կարծելով, թե Գոհարն իրեն դավաճանել է, տղան բարձրանում է ապարանքի վերին հարկը և այնտեղից իրեն նետում ցած: Հաջորդ օրը այդ նույն տեղից իրեն ցած է նետում ու մեռնում նաև Գոհարը:

Եվ չնայած իշխանն էլ լքեց ապարանքն ու գնաց ուրիշ տեղ, բայց շրջակայքում այնքան արեցին այս ապարանքի պատմությունը, որ գյուղը կոչվեց Ապարանք:

## ԱՌԵՍՏ

Վասպուրականի նահանգի Առբերանի գավառում, Վանա ծովակի հյուսիս-արևելյան ափին, Առեստի գետաբերանի մոտ, Առեստ կամ Առեստավան անունով մի ավան է եղել:

Տեսնո՞ւմ եք՝ և գետն է կոչվել Առեստ, և ավանը: Սա դեռ ամբողջը չէ, ավանից քիչ վերև մի գյուղ է եղել, որ կոչվել է Փոքր Առեստ, իսկ գետափնյա դաշտը՝ Առեստակողմն:

Հայ Արշակունի թագավորների ժամանակ Առեստ ավանի մոտ կար արքունի ձուկ որսալու տեղ: Արքունական այս ձկնորսարանում կողովներով տառեխ էին որսում:

Այստեղ այնքան շատ ձուկ էին որսում, որ Վան քաղաքում ու Վասպուրականի մյուս կողմերում ավելցուկը աղ էին դնում կամ ապխտում և արտահանում ուրիշ վայրեր:

Այդ ժամանակներում Առեստն այնքան վաճառաշահ էր, որ պատմիչ Ղազար Փարպեցին այն անվանել է գյուղաքաղաք:

Առեստը Հայոց աշխարհի յոթ ձկնառատ գետերից մեկն էր: Առաջ գետն է կոչվել Առեստ, հետո՝ ավանը, գյուղն ու դաշտը:

Բայց ինչո՞ւ են մեր պապերը տառեխաշատ գետն այդպես կոչել, ի՞նչ է նշանակում Առեստ:

Եվ գետը, և ավանը սկզբում անվանել են Երաստ, որ նշանակում է հրապարակ, վաճառատեղի, հոծ, խուռն: Այդպես են կոչել, որովհետև սա եղել է տառեխի ձկան հավաքատեղի, նրանք

այստեղ հոծ վտառներ էին կազմում:
Հետո Երաստը հնչյունափոխվել է ու դարձել Առեստ:

## ԱՌՅՈՒԾԿԱ

Բաբերդ քաղաքից հարավ, Ճորոխ գետի ձախափնյա կողմում, թավուտ անտառի մեջ կուչ եկած մի գյուղ է եղել Առյուծկա անունով:
Առյուծ նշանակում է մռնչալ, իսկ Առյուծկա՝ առյուծի կենալիք տեղ, այսինքն՝ վայր, ուր առյուծ է ապրում: Իրոք, այս գյուղի մերձակայքում առյուծներ էին լինում:
Մի անգամ ճարտարապետ Թորոս Թորոսմանյանը հյուրընկալվում է այս գյուղում: Զրույցի ժամանակ Թորոսմանյանը հարցնում է.
— Ձեր հներն ինչո՞ւ են գյուղը Առյուծկա կոչել:
Նրան պատասխանել են.
— Մեր նախնիք գյուղը Առյուծկա են կոչել, որպեսզի մենք ոչ առյուծից վախենանք, ոչ նրա մռնչոցից և այս մթին անտառներում էլ առյուծի պես անվախ լինենք:

## ԱՍԵՂ

Ասեղ նշանակում է ծայր, սայր, սրածայր ձողիկ, ստև: Թվում է, թե եղածը մի բան չէ, բայց արի ու տես, որ այդ բառը հինգ հազար տարեկան է:
Եվ, այնուամենայնիվ, հինգ հազար տարեկան լինի, թե հինգ օրական, ասեղը մնում է ասեղ, ու թվում է, թե խելքին մոտիկ բան չէ մի ամբողջ գյուղ այդ փոքրիկ իրի անունով կոչելը:
Դա եղել է այսպես: Քղի գավառի գյուղերից մեկում մետաղագործ մի վարպետ էր ապրում, որի պատրաստած ընտիր ասեղներր մեծ հռչակ ունեին Բարձր Հայք նահանգի բոլոր կողմերում: Մարդիկ վարպետի ու գյուղի անունները չէին տալիս: Ասում էին՝ գնում ենք ասեղի գյուղը, այսինքն՝ այնտեղ, ուր ասեղ էին պատրաստում ու վաճառում: Ասեղի գյուղ, ասեղի գյուղ ասելով՝ բնակավայրը կոչվեց Ասեղ:

АРТАШЕС ГАЗАРЯН

ԱՐՏԱՇԵՍ ՂԱԶԱՐՅԱՆ

# Երազում

— Դու երազում
Ի՞նչ տեսար.
Մառե՞ր նազուն,
Լի՞ճ, թե՞ սար:

— Լեռներ տեսա
Ձյունաթագ:
Ջուրը սառն էր,
Ձյունը՝ տաք:

Լեռներում մի
Գյուղ տեսա,
Հազար ծառ ու
Ծյուղ տեսա:

Տեսա վարդեր
Հուրհրան,
Ու ցոլցլուն
Ցող վրան:

Մի արտ տեսա
Նոր վարած,
Արտում՝
Մի լոր ծվարած:

Ծիրանենու շուքի տակ
Տեսա փոքրիկ
Մի փեթակ:
Փեթակի մոտ՝
Մի քոթոթ:

— Հեռացիր շուտ, թե չէ՝
տես,
Մեղուները դուրս կգան
Եվ քեզ մի լավ
Դաս կտան:



# «Մեծի հետ՝ մեծ, փոքրի հետ՝ փոքր»

Արագած սարի ստորոտին է գտնվում Աշտարակի շրջանի Ավան գյուղը: Գյուղ չմտած՝ ճանապարհի ձախ կողմը, ասֆալտապատ ճանապարհից քիչ վերև, բարձրանում է դպրոցի երկհարկանի գեղեցիկ շենքը՝ շուրջը համատարած կանաչ, դեպի մուտքը տանող աստիճանների եզրերին կողք-կողքի, անխռով շարված վարսաթափ ուռիներ:

Դպրոցի երիտասարդ ուսուցիչներից Ռիտա Ղարագյոզյանը փորձում է վերհիշել իր այն օրվա ապրումները, երբ առաջին հանդիպումն ունեցավ աշակերտների հետ:

— Մտա դասարան լուրջ, խիստ արտահայտություն տված դեմքիս, աշխատելով հուզմունքս թաքցնել: Բայց էլի տեսա երկու տասնյակ երեխաներ, որոնք նայում էին ինձ լայն բացված աչքերով, և ականջիս հասավ նրանց քչփչոցը. «Մեր գյուղի հարսն է, քաղաքից է», չկարողացա ժպիտըս պահել: Հուզմունքս անցավ, և ես ինձ ինքնավստահ զգացի: Սկսվեց իմ և նրանց առաջին դասը:

Թվում էր, թե անկրկնելի, անդառնալի մի երջանկության մասին է նա խոսում: Այնպիսի զմայլանքով, գորովանքով ու զգուշությամբ էր պատմում իր առաջին դասի մասին, որ անկարելի էր չհիանալ այդօրինակ սիրահարվածության վրա:

Նա փոքրիկ-մոքրիկ է, աշխույժ ու սրտաբաց: Խոսելիս ժպտում է, իբրև վկայություն, որ կեղծիք ու սուտ չի սիրում: Եվ դա իրոք այդպես էր: Անմիջականության, սրտացավության համար դպրոցում բոլորն են սիրում ու հարգում նրան, իսկ ցածր դասարանցիների համար նա բացարձակ հեղինակություն է, իրենց անփոխարինելի բարեկամը: «Փոքրի հետ փոքր է, մեծի հետ՝ մեծ»,— նրա մասին ասում են գյուղում:

Ռիտայի և Սամվել Մանուկյանի, որ դպրոցի ուսմասվարն է, անդրանիկ զավակը՝ Արթուրը, եկող ուսումնական տարում դպրոց է հաճախելու: Որդին դպրոցում կնստի առաջին դասարանում, կլսի մորն ու կզարմանա. ինքն իրեն կհարցնի՝ իսկ ինչո՞ւ տանը այսպես չի:

Գյուղի մարդկանց համոզմամբ քաղաքի աղջիկը դժվար է համակերպվում գյուղի կյանքին: Բայց այստեղ մարդիկ մոռանում են, որ Ռիտան քաղաքում է ծնվել ու մեծացել, մոռանում են, բայց միաժամանակ հիանում նրա եռանդով ու աշխատասիրությամբ, որով էլ գրավել է ողջ գյուղի սերն ու հարգանքը:

— Առաջին իսկ օրից ես ինձ այստեղ օտար չեմ զգացել, որովհետև շուրջս մարդիկ բոլորը բարի են:

Շուրջը բարին տեսնող մարդը չի կարող իր ընտրած գործի նկատմամբ բարեխիղճ, ազնիվ ու նվիրված չլինել, իր այդ բարությամբ է նա ամեն անգամ մտնում առաջին դասարան և փոքրերի հետ հնչեցնում հայոց այբուբենը:

ԳԱՐԵԳԻՆ ԳԵՎՈՐԳՅԱՆ

Լուսանկարը՝ ՎԼԱԴԻՄԻՐ ՍԱՐ[illegible]ՅԱՆԻ

ԱՐՄԵՆ ՇԵԿՈՅԱՆ

# Ծիածանի տակով չանցան

Ամպերն եկան
Ու անց կացան։
Եղավ արև
Ու ծիածան։

Տղան ուզեց
Տակով անցնի,
Բայց չհասավ
Ծիածանին։

Աղջիկն ուզեց
Տակով անցնի,
Բայց չհասավ
Ծիածանին։

Հանդիպեցին
Նրանք իրար
Ու ասացին
Այսպես իրար.

— Սիրուն աղջիկ,
Ինչ լավ եղավ,
Որ չդարձար
Ինձ պես տղա։

— Սիրուն տղա,
Ինչ լավ եղավ,
Որ չդարձար
Ինձ պես աղջիկ։—

Ծիծաղեցին
Ուրախ ու գոհ,
Վերադարձան
Եկած ճամփով։

# Շունն ու գայլը

Մի շուն ասաց մի գայլի.
— Էդպես գոռոզ մի քայլիր,
Էն դու չէի՞ր՝ գողի պես
Եկար–արիր հոտը կես,
Մտար գողի պես փարախ
Ու հեռացար փախեփախ։
Թշնամի ես, թշնամի,
Շունն էդպես բան չէր անի։—

Գայլը ասաց.— Շուն ախպեր,
Ի՞նչ է, ուզում ես կախվե՞մ։
Ընտանիքով վեց շունչ ենք,
Մեղավո՞ր ենք, որ շուն չենք։

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ





# ԶՐՈՒՅՑՆԵՐ ՄԵՐ ՀՆԱԳՈՒՅՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

ԶՐՈՒՅՑ ՏԱՍՆՅՈԹԵՐՈՐԴ

**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
Բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

## Արա Երկրորդ, թագավոր խաղաղության

Ասորեստանի թագավոր Սարգոն II-ը իր տարեգրության մեջ և թողած այլ արձանագրություններում այնպես է նկարագրում մ. թ. ա. 714 թ. իր արշավանքը դեպի Արարատի թագավորություն, որ այսօրվա կարդացողին կթվա, թե հայոց երկրում Սարգոնն ամեն ինչ ավերել է, ոչինչ չի թողել: Բայց փաստերը բոլորովին այլ բան են ասում. Արարատի թագավորությունը մնում էր ու շարունակում էր ծաղկել: Ուրեմն, Ասորեստանի թագավորների սովորության համաձայն՝ Սարգոնը ինքնագովությամբ է զբաղվել, չափազանցություններ է գրել տվել իր փորագրիչներին: Ըստ Սարգոնի արձանագրությունների, նա ամենից մեծ ավերածությունները գործել է Վանա լճի հարավային և արևելյան մասերի հայկական հոծ շրջաններում՝ Հայոց տուն (Հայադու), Հայոց ձոր և այլն: Սակայն Սարգոնի հեռանալուց հետո այդ շրջանները, ինչպես և թագավորության մյուս մասերը, որ ասորեստանցիների արշավանքի ուղու վրա էին, բնականոն կյանք էին վարում: Հավանաբար, Սարգոնը ուժեղ հակահարվածներ է ստացել հայոց բանակների կողմից հենց Վանա լճի շրջակայքում, բայց այդ մասին նա լռություն է պահպանել:

Մ. թ. ա. 713 թվականին Վան-Տոսպում գահ է բարձրանում Ռուշա I-ի որդի Արա (Արգիշտի) II-ը: Նա թագավորում է 28 տարի, մինչև մ. թ. ա. 685 թ.: Այդ տարիները շատ օգտակար ու նպաստավոր էին Արարատի թագավորության համար: Սարգոն II-ը, որ դեռ թագավորում էր Ասորեստանում, այլևս չի համարձակվում հարձակվել Հայաստանի վրա, մանավանդ չի փորձում նորից արշավել դեպի երկրի խորքը: Նրա զորավարները մի երկու մանր արշավանք են կատարում դեպի Արարատի թագավորության ծայրամասերը: Օրինակ, պատերազմում են Եփրատի ափին գտնվող հայոց Կեմախի (Կումախի) դեմ, որը չէր ուզում ճանաչել Ասորեստանի գերիշխանությունը և իրեն համարում էր Արարատի հայոց թագավորության մի մասը: Արա II-ի օգնությամբ Կեմախը ետ է շպրտում Սարգոնի զորքերը: Կեմախը մտնում էր Թորգոմի տուն կամ Թորհիգամա կոչված հին հայկական մարզի մեջ, որը թեև Արարատի հայոց թագավորության կազմի մեջ էր, բայց Վանի տիրակալների համաձայնությամբ տեղի ղեկավարը պահպանել էր թագավորի տիտղոսը:

Այդպես, Արարատի թագավորության արևմտյան շրջանները Արա II-ը բավական ամրացնում է ընդդեմ Ասորեստանի հնարավոր հարձակման: Այդ շրջաններից էր նաև Ծոփքը, որը, ինչպես նախորդ զրույցներից գիտենք, Մեծ Հայքի անհանգիստ ծայրամասն էր: Հիշենք, որ դեռ Արա I-ը այդ աշխարհը հնազանդ պահելու համար տեղական տիրակալի զորքից և բնակչությունից շատերին փոխադրեց նորակառույց Էրևան—Էրեբունիի շրջակայքը: Ծոփքի հայ տիրակալները երբեմն հակվում էին դեպի Ասորեստանի օգնությունը: Բայց Արա II-ի օրոք, նրա խելացի քաղաքականության շնորհիվ Ծոփքը մնում էր հավատարիմ հայոց մեծ թագավորին՝ որպես Արարատի թագավորության անբաժան մասը: Արայի հատուկ զորաբաժինները հսկում էին թագավորության այդ հարավ-արևմտյան աշխարհի անվտանգությունը: Արան քաղաքից քաղաք պահակային ծառայություն էր կարգել՝ մինչև Վան-Տոսպ: Արա I-ը Ծոփքից քիչ հյուսիս, Երզնկա քաղաքի մոտ, կառուցեց մեծ բերդաքաղաք, որպես այդ

կողմերի կենտրոն: Հետաքրքրական է, որ այդ քաղաքը անհայտ պատճառով մարդազուրկ դառնալուց հետո, մոտ 2600


Արարատի թագավորության ժամանակաշրջանի սեղան

տարի մնացել էր հողի տակ և պահպանվել: Վերջին տասնամյակներում օտարերկրյա հնագետները հայտնաբերեցին հայոց այդ բերդաքաղաքը և հողի տակից հայկական արվեստի հրաշալի նմուշներ հանեցին:

Արա II-ը, իրոք, հմուտ քաղաքագետ էր: Նա կարողանում էր նաև Ասորեստանի հետ խաղաղություն պահպանել, նույնիսկ լավ հարաբերություններ ստեղծել: Թե՛ Սարգոն II-ը և թե՛ նրան փոխարինած Սենեքերիմը (ասուրաբաբելերեն՝ Սինաքերիբ), որ նույնպես հզոր թագավոր էր (մ. թ. ա. 705—680 թթ.), մեծ մասամբ լավ հարաբերություն էին պահպանում հայերի հետ: Ճիշտ է, Ասորեստանի լրտեսները դարձյալ գործում էին Արարատի թագավորության սահմաններձ շրջաններում, բայց հայերն էլ իրենց հերթին լրտեսներ էին ուղարկում Ասորեստանի իշխանության տակ գտնվող շրջանները: Սա փոխադարձ հետախուզություն էր:

Ասորեստանի հետ կնքված խաղաղությունը Արա II-ն օգտագործում էր իր թագավորությունն ամրապնդելու համար: Մենք տեսանք, որ նա պետության արևմուտքում ամրացրեց Թորգոմի տունը, Կեմախը, Ծոփքը: Թագավորության կենտրոնական և արևելյան մի քանի վայրերում էլ հայ իշխանները փորձեր էին անում անջատվել Արա II-ի թագավորությունից: Օրինակ, այդպիսի փորձ էին արել Սյունիքում: Արա II-ր զորքով գնում է Սյունիք և մասամբ պատերազմով, մասամբ դիվանագիտությամբ հնազանդեցնում է տեղի հայ տիրակալներին: Այդ մասին Արան մեծ արձանագրություն է գրել տվել, որը վերջերս գտնվեց Սիսիանի մոտակայքում:

Ապա Արա II-ր իր զորքով հայտնվում է Մեծ Հայքի ամենաարևելյան շրջաններում, որ Կասպից ծովի ափերին էին, և հնազանդեցնում է նաև այստեղի տիրակալներին, որոնք փորձում էին Ասորեստանի օգնությամբ անջատվել Արարատի թագավորությունից:

Արա II-ր մի քանի ուրիշ բերդաքաղաքներ էլ կառուցեց, շատ ջրանցքներ փորել տվեց՝ հատկապես Վանա լճի շրջ-


Արձանիկ (սֆինքս) Արարատի թագավորության ժամանակաշրջանից

ջակայքում: Նա անմշակ, խոպան շատ հողեր մշակելի դարձրեց, պտղատու, այդ թվում խաղողի մեծ այգիներ գցել տվեց:

Արա II-ը կարողացավ Մեծ Հայքի Արարատյան թագավորությունը պահպանել այնպես, ինչպես ժառանգություն էր ստացել իր հորից ու մեծ պապից (պապի հորից): Որպես զորավար նա թեև հզոր էր, բայց ոչ այնքան, որքան իր մեծ պապը՝ Արա I-ը: Սակայն նա մեծ դիվանագետ էր, խորամանկ և կարողացավ այնպես թագավորել, որ 28 տարվա ընթացքում Հայքը Ասորեստանի հետ ոչ մի լուրջ պատերազմ չունեցավ: Դրանք հիմնականում խաղաղ տարիներ էին հայերի համար:

Արա II-ն իր մասին այսպես է գրել մի արձանագրության մեջ, որը նվիրված է Արճեշ քաղաքի մոտ ջրանցք կառուցելուն. «Արան՝ Ռուշայի որդին, ասում է թող այս ջրանցքը ոռոգիչ լինի այս քաղաքների համար... Հայկ աստծու մեծությամբ Արան, Ռուշայի որդին՝ հզոր թագավորը, Վանա երկրի թագավորը, Հայկ աստծու ծառան, ժողովրդի նվիրված հովիվը, որ Հայկ աստծու մեծությամբ չէր վախենում ճակատամարտից»:

Այո՛, Արա II-ը ճակատամարտից ու պատերազմից չէր վախենում, բայց ամեն կերպ աշխատում էր, որ պատերազմ չլինի:

Ասորեստանի և Արարատի միջև պահպանվող շատ տարիների խաղաղությունը մի այլ պատճառ էլ ուներ, դա այն էր, որ Ասորեստանից արևելք և Արարատի թագավորությունից հարավ-արևելք մի նոր պետություն էր հզորացել, որը հավասարապես վտանգավոր էր թե՛ Ասորեստանի, թե՛ Արարատի համար: Դա Մարաստանն էր, մարերի երկիրը, որ օտար ձևով կոչվում է Մեդիա:

Հիշենք, որ մարերի դեմ դեռևս պատերազմել էր Արամը և հաղթել: Բայց դրանից հետո մարերը (մեդացիները) շատ էին հզորացել: Նրանց միացել էին նաև սկյութացի անձնուն ռազմիկները: Իսկ Մարաստանից հարավ գտնվում էր Պարսան՝ պարսիկների նախնական երկիրը: Պետք է իմանալ, որ մարերը, սկյութացիները, պարսիկները թեև երբեմն խիստ թշնամանում էին միմյանց դեմ, բայց երեքն էլ իրանյան ժողովուրդներ էին, լեզվով իրար շատ մոտ: Սա պետք է հիշել, քանի որ շուտով նրանց դերը մեծանալու էր հին Հարավ-արևմտյան Ասիայում:

(շարունակելի)



ԱՐԱՐԱՏ ԵՂԻԿՅԱՆ

Արևը սովորական աստղ է, գիշերային երկինքը զարդարող այլ աստղերից ոչնչով չտարբերվող: Միլիարդավոր աստղերի հետ այն մտնում է հսկայական աստղային մի համակարգի մեջ, որը կոչվում է Գալակտիկա: Թե որքան է մեծ Գալակտիկան, բերենք միայն մի օրինակ. որպեսզի մի աստղի լույսը հասնի հարևան աստղին, հարկավոր են տարիներ, իսկ այդ համակարգի մի ծայրից մյուսը լույսը կհասնի ավելի քան հարյուր հազար տարում (հիշենք, որ լույսը անցնում է մեկ վայրկյանում 300000 կիլոմետր):

Սակայն, լինելով Գալակտիկայի շարքային անդամ, Արեգակն ունի գոնե մեզ համար առանձնահատուկ նշանակություն՝ նրա ջերմության շնորհիվ իր շուրջը պտտվող թվով երրորդ մոլորակի՝ Երկրի վրա (Մերկուրիից ու Վեներայից հետո)

# Արեգակն ու մենք

կյանք կա բազմազան ձևերով՝ սկսած պարզագույն մանրէներից, մինչև ամենակատարելագործված էակը՝ մարդը:

Բոլոր կենդանի էակները ծնված օրից գտնվում են Արեգակի ուղղակի և անուղղակի ազդեցության տակ: Արեգակ—Երկիր կապը բազմատեսակ է և կարող է իրականանալ տարբեր ճանապարհներով, ու հետևանքներն էլ կարող են լինել տարբեր:

Բայց, նախ, եկեք փորձենք հասկանալ երևույթի բնույթը: Ակնհայտ է, որ Արեգակը ճառագայթում է, և հենց այդ ճառագայթման ազդեցության շնորհիվ էլ զարգացել է կյանքը Երկրի վրա: Հայտնի է նաև, որ այդ ճառագայթային էներգիայի մեծությունը խիստ հաստատուն է եղել մեր մոլորակի գոյության ողջ ընթացքում: Դա միաժամանակ նշանակում է, որ Արեգակի ճառագայթման էներգիայի աղբյուրները խիստ կայուն են եղել: Այդ աղբյուրները պայմանավորված են Արեգակի խորքային շերտերում ընթացող ջերմամիջուկային ռեակցիաներով, որոնց ժամանակ անջատված էներգիան արտահոսում է դեպի մակերևույթ և վերաճառագայթվում: Խիստ հաստատուն այդ ճառագայթումը, թեև Երկրի կենսոլորտի պահպանման անփոխարինելի գործոններից է, այնուամենայնիվ, չի ապահովում դիտվող փոփոխությունները կենդանի մարմիններում, փոփոխություններ, որոնք ակնհայտորեն կապված են Արեգակի հետ:

Մեր աչքին խաղաղ թվացող Արեգակը միշտ չէ, որ հանգիստ է՝ նրանում տեղի են ունենում նաև «փոթորիկներ», «մրրիկներ», կապված հզոր մագնիսական դաշտերի գործունեության հետ: Այդ «մագնիսական փոթորիկների» արդյունքներից են խիստ բարձր էներգիա ունեցող տարրական մասնիկները՝ պրոտոնները և էլեկտրոնները: Այդ մասնիկները լայնահուն հոսքով դուրս են գալիս Արեգակից, անցնում են միջմոլորակային նյութի միջով. դա այն խիստ նոսր նյութն է, որը սփռված է Արեգակի և մոլորակների միջև ընկած տարածքներում: Մինչև Երկիր հասնելը մասնիկները

գրգռում են այդ նյութը, առաջ բերելով հզոր հարվածի ալիքներ: Ճիշտ է, այդ ձևով արձակված էներգիան Արեգակի ընդհանուր ճառագայթված էներգիայի մի տոկոսն էլ չի կազմում, սակայն իր հատկություններով ի վիճակի է չեշտակիորեն ազդել կենսոլորտի վրա:

Արեգակնային փոթորիկների առաջացումը կապված է նրա խորքային շերտերում անջատված էներգիայի տեղափոխման առանձնահատկությունների հետ:

Հայտնի բան է. Արեգակի հետ կապված որոշ երևույթներ կրում են պարբերական բնույթ: Դրանց թվին է պատկանում առկայծումների ու փոթորիկների կրկնությունը՝ 7 օրվա պարբերությամբ, իր առանցքի շուրջը մեկ պտույտի տևողությունը՝ մոտ մեկ ամիս ժամանակով, արևաբծերի քանակության աստիճանական աճն ու նվազելը՝ 11 տարվա պարբերությամբ և այլն: Այս ամենը, պարզվում է, հետևանքն են դարձյալ նրա խորքային շերտերում տեղի ունեցող երևույթների:

Միջմոլորակային տարածությունում գտնվող նյութի խոտորումը և այդտեղ առաջացած հարվածի ալիքները հասնելով Երկիր, իրենց հերթին գրգռում են Երկրի մթնոլորտի վերին շերտերը, որոնք ամբողջովին բաղկացած են լիցքավորված մասնիկներից: Հենց այդտեղ էլ առաջանում են այն բազմաթիվ ալիքները, որոնք անմիջապես կամ անուղղակի (Երկրի մագնիսական դաշտի և օդի վիճակը փոխելով) կարող են ազդել ողջ կենդանական աշխարհի, մինչևիսկ Երկրի կլիմայի և ընդերքի վրա: Որքան անկայուն, անհավասարակշիռ վիճակում է գտնվում երկրային մարմինը, այնքան ազդեցությունը դրա վրա մեծ է լինում:

Արեգակի ակտիվության տատանումների հետ են կապված, օրինակ, աղետավոր երաշտները: Ճիշտ է, հայտնի փաստերը բավարար չեն դրանց ստույգ կանխագուշակման համար, քանի որ երաշտը այլ գործոններից էլ է կախված: Բայց այդ կապը անկասկած կա: Պարզվել է նաև, որ գոյություն ունի առնչություն՝ երկրաշարժերի հաճախականության և Արեգակի ակտիվության միջև:

Բազմաթիվ են Արեգակի ակտիվության օրինակները կենդանի մարմինների վրա:

Որոշ միջատների և կրծողների ընդհանուր քանակությունը խիստ կախված է Արեգակի ակտիվությունից: Մորեխի զանգվածային ու պարբերական ներխուժումները, հաճախ նաև զանազան տեսակի կրծողների քանակից կախված ժանտախտի համաճարակը համընկնում են Արեգակի ակտիվության փոփոխությունների հետ: Այս հանգամանքը հարկադրեց գիտնականներին դեռևս մեր դարի սկզբին հաշվի առնել նման կապի առկայությունը:

Հետզհետե հայտնի դարձավ այդ ազդեցության առկայությունը նաև մարդու վրա: Օրինակ, մի շարք հիվանդությունների որոշակի և օրինաչափ փոփոխությունները, ավտովթարների քանակի բաշխվածությունը, նորածինների կշռի և հասակի տատանումները և այլն: Թվում է, թե ի՞նչ կապ կարող է լինել հիշյալ երևույթների և Արեգակի ակտիվության փոփոխությունների միջև: Բայց փաստ է, որ արեգակնային փոթորիկների հանդես գալը և այդ երևույթների կրկնությունը համընկնում են:

Կարևոր դեր են խաղում Երկրի մթնոլորտի վերին գրգռված շերտերում առաջացած ցածր և գերցածր հաճախականության էլեկտրամագնիսական ալիքները, որոնց պատճառը Արեգակից եկած ու խիստ բարձր էներգիայով օժտված էլեկտրոնների և պրոտոնների հզոր հոսքերն են:

Ինչ վերաբերում է կենդանի մարմինների վրա այդ ալիքների անմիջական ազդեցության բնույթին, ապա ամեն ինչ չէ, որ այսօր պարզ է: Առավել հեռանկարային է թվում հետևյալ վարկածը. ցածր հաճախականության (1 հերցից պակաս) էլեկտրամագնիսական ալիքի ազդեցության ներքո կարող է փոխվել բջիջների թաղանթների թափանցելիությունը: Եթե դա ճիշտ է, ապա այդքանն էլ բավական է, որ առաջին հերթին թույլ (օրինակ՝ հիվանդ) էակների վիճակը վատթարանա:

Դեռ շումերների ժամանակից է հայտնի, որ մարդու որոշ ֆիզիոլոգիական ու հոգեբանական հատկություններ պարբերաբար կարող են փոփոխվել 7 օրը մեկ: Հենց դրանով է բացատրվում շաբաթներից բաղկացած օրացույցի առաջացումը մեր թվարկությունից դեռ շատ ու շատ առաջ: Հիմա արդեն անկասկած է, որ այդ փոփոխությունները այսպես թե այնպես կապված են Արեգակի ակտիվության հետ: Հետևաբար շաբաթներից բաղկացած օրացույցն էլ իր հիմքով դառնում է «արեգակնային»:

Այո, մարդը «Արևի որդին է», իսկ Արեգակն ու Երկիրը այնքան են սերտ կապված իրար հետ, որ դրանք դիտարկել այլ կերպ, քան որպես անքակտելի մի ամբողջություն, անհնար է:

ԴԱՍԱԿԱՆՆԵՐԻ ԷՋ



Դանիել Վարուժան

1884—1915

## Անդաստան

Արևելյան կողմն աշխարհի
Խաղաղությո՜ւն թող ըլլա…
Ոչ արյուններ, քրտինք հոսին
Լայն երակին մեջ ակոսին.
Ու երբ հնչե կոչնակն ամեն գյուղակի՝
Օրհներգությո՜ւն թող ըլլա։

Արևմտյան կողմն աշխարհի
Բերրիությո՜ւն թող ըլլա…
Ամեն աստղե ցող կայլակի,
Ու ամեն հասկ ձուլե ոսկի.
Եվ ոչխարներն երբ սարին վրա
արածին՝
Ծի՜լ ու ծաղի՜կ թող ըլլա։

Հյուսիսային կողմն աշխարհի
Առատությո՜ւն թող ըլլա…
Ոսկի ծովուն մեջ ցորյանին
Հավետ լողա թող գերանդին.
Ու լայն ամբարն աղուններուն երբ բացվի՝
Բերկրությո՜ւն թող ըլլա։

Հարավային կողմն աշխարհի
Պտղաբերո՜ւմ թող ըլլա…
Ծաղկի մեղրը փեթակներուն,
Հորդի գինին բաժակներուն.
Ու երբ թխեն հարսերը հացը բարի
Սիրերգությո՜ւն թող ըլլա։

ՄԱՐԳՈ ՂՈՒԿԱՍՅԱՆ

Ճամփորդել հեռավոր երկրներ՝ կա՞ մեկը, որ դպրոցական տարիներից երազած չլինի: Անձամբ ես երկար տարիներ փափագել եմ տեսնել այն վայրերը, որոնք մանկուց ծանոթ էին ինձ աշխարհագրության դասերից:

Եվ ահա ես Իսպանիայում եմ՝ Սերվանտեսի երկրում: Հանճարեղ մի գրող, որ աշխարհին նվիրեց «Դոն Կիխոտ»: Մադրիդի տեսարժան վայրերից մեկը Սերվանտեսի արձանն է: Ինչքան թանգարաններ, քանի-քանի պատմական ու ճարտարապետական հուշարձաններ:

Մեր երթուղին, սկսելով Մադրիդից, անցավ Տոլեդո, Կորդովա, Սևիլիա, Մալագա, Գրանադա, Բարսելոն քաղաքներով: Բացեք քարտեզը և փորձեք գտնել այդ քաղաքները: Հիշեք, մի քաղաքից մինչև մյուսը ճանապարհն անցնում է ձիթենիների այգիներով ու անտառներով: Իմացեք նաև, որ մեր անցած բոլոր քաղաքներում կային ցլամարտի մարզադաշտեր: Չմոռանաք նաև՝ Իսպանիայի հարավում երեք բերք է հասունանում: Հունվար ամսին մենք ականատես եղանք խաղողի բերքահավաքի: Իսկ ձիթապտուղն այնքան շատ է, ամբողջ հավաքել հնարավոր չէ: Այնքան շատ բան կա պատմելու: Ծոցատետրումս տասնյակ էջեր են գրառված: Դրանցից ձեզ համար ընտրել եմ մի քանի հատված Իսպանիայի թանգարաններից:

# ԳՈՒՅՆԵՐԻ ԻՍՊԱՆԱԿԱՆ ՀՅՈՒՍՎԱԾՔԸ

## Պաբլո Պիկասո

Բարսելոն:

Դեռ երեկ, երբ շրջում էինք քաղաքում, էքսկուրսավարը ցույց տվեց «Չորս կատուների» սրճարանը, որտեղ հավաքվել են նկարիչները, Պիկասոն ևս: Արվեստագետների նշանավոր այդ հավաքատեղին է պատճառը, որ ստեղծվել է հումորով լի բազմանշանակ մի խոսք. «Մենք այնքան քիչ ունենք, ընդամենը չորս կատու»: Այս արտահայտությունը հատկապես գործնական է, երբ որևէ մեկին հարցնում են՝ քանի՞ երեխա ունես: Հիմա գնում ենք նեղ փողոցով, որի երկու կողմերում հնադարյան տներ ու դղյակներ են: Համարյա բոլոր առաջին հարկերում ցուցահանդեսներ ու թանգարաններ են: Պիկասոյի թանգարանը տեղավորված է աղյուսե թաղակապ մի պալատում: Վերակառուցման ժամանակ հատակի տակ բացվել են շատ վաղ շրջանի կարասներ, որոնք ցորենի ու գինու պահեստարաններ են եղել: Կարասների մեջ լամպ էր վառվում և ծածկված էր ապակիով: Զբոսաշրջիկները կանգնած են շղթայից այս կողմ, թեև կարասներին ոչ մի վտանգ չի սպառնում: Եվ ուզես, թե չուզես հիշում ես Կարմիր Բլրի երեքհազարամյա կարասները, որոնք պեղողների և պահապանների անփութության պատճառով մինչև վերջինը փշուր-փշուր եղան:

Մոտ տասը տարի Պիկասոն ապրել է Բարսելոնում, սովորել տեղի Գեղարվեստի դպրոցում: Ահա «Ծերունու դիմանկարը». իմաստուն մի դեմք. 14 տարեկան է եղել նկարիչը, որ ստեղծել է այդ գլուխգործոցը: Պատանի Պիկասոյի բնորդներն իր մերձավորներն են: «Գիտություն և գթասրտություն». բժիշկը հայրն է, հիվանդը՝ քույրը: Նկար, ստեղծված 16 տարեկանում, որը նշվել է դիպլոմով: «Առաջին հաղորդությունը» Պիկասոն նկարել է 15 տարեկանում: «Այս նկարից հետո նրան հանճարեղ անվանեցին»,— ասում



«Գեռնիկա», 1937 թ. (հատված)

է տնօրենը:

Եզակի այդ թանգարանում հիմնականում ցուցադրված էին գործեր նկարչի մանկության և պատանության շրջանից: Ծոցատետրի էջերում, գրքերի լուսանցքներում, ափաչափ տախտակի վրա արված են էսքիզներ, տարբերակներ... Մենք տեսանք նկարչի ներկապնակն ու ներկատուփը: Նկարներից մեկի վրա մի քանի անգամ փորձել էր, թե ինչպես ստորագրի՝ Պաբլո Ռուիզ (հոր ազգանունը), թե՝ Պաբլո Պիկասո (մոր ազգանունը): Մանկության շրջան... Պարզ, զուլալ, գեղեցիկ նկարներ են: Անձնական կյանքը, հաջողությունները ու անհաջողությունները, հասարակական երևույթները, համամարդկային խնդիրները են, որ աստիճանաբար նրա հոգում խորանալով ելք են որոնել և նորանոր ձևերով դրսևորվել կտավներում: «Պիկասոյի ողջ տրամադրությունից է կախված եղել»,— ասաց էքսկուրսավարը:

Մենք տեսանք մի քանի նկար Պիկասոյի երկնագույն շրջանից. սառը գույներ, խոժոռ հայացքներ, դիմակներ, թաղման տեսարաններ, «Անտուններ»: Այդ շրջանում նրա վրա ազդել են սիրելի ընկերոջ ինքնասպանությունը և հոր հետ ունեցած վատ փոխհարաբերությունը: Տեսանք նկարներ՝ վարդագույն շրջանից. դա նրա կյանքի երջանիկ տարիներն էին, հոգեկան խաղաղ վիճակ՝ սիրելի կնոջ՝ Ֆերնանդայի կողքին: Գեղեցկությամբ և խաղաղությամբ էր բուրում «Կնոջ դիմանկարը»:

Դահլիճներից մեկում կային նկարներ, որոնք շատ նման էին ֆրանսիական իմպրեսիոնիստների գործերին: Էքսկուրսավարը պարզեց գաղտնիքը. «Նկարիչները վախենում էին իրենց գործերը ցույց տալ Պիկասոյին. մեկ անգամ տեսնելուց հետո նա կարողանում էր նկարել նրանց ոճով, բայց՝ ավելի լավ: Ահա դրանց օրինակները»:

Ապակե զանգի տակ մի փոքր արձանիկ՝ «Նստած մարդը». դա Պիկասոյի առաջին քանդակն է, որը պահել է քույրը:

«Աոլեկինը». Պիկասոյի հայտնի նկար-



«Աղջիկը հայելու դեմ», 1932 թ., Ժամանակակից արվեստի թանգարան, Նյու-Յորք



«Մայրություն», 1921 թ.



«Ինքնանկար», 1906 թ., Գեղարվեստի թանգարան, Ֆիլադելֆիա

ներից մեկը: Ինչպես էքսկուրսավարն ասաց՝ մեր բախտը բերել է, քանի որ «Առլեկինը» հաճախ է ճամփորդում: Նկարներից շատերը ցլամարտի հետ են կապված: Զին զոհն է, ցուլը՝ հարձակվողի խորհրդանիշը: Մեր ուշադրությունը գրավեցին բազմաթիվ բացատրագրերը՝ կախված սրահներում, որոնք պատմում էին Պիկասոյի կյանքի, նրա ստեղծագործական շրջանների մասին: «Ֆրանկոյի ժամանակ արգելված էր թանգարան գնալը: Եվ ժողովուրդը չի մտերմացել մեծ նկարչին: Մինչդեռ Պիկասոյին հասկանալու համար պետք է իմանալ նրա կյանքը»:

Պիկասոյի թանգարանը՝ Բարսելոնում: Այդ ժամանակ ես դեռ չգիտեի, որ երկու օր անց Մադրիդում տեսնելու եմ նրա գլուխգործոցը՝ «Գեռնիկան»: Չգիտեի նաև, որ անցնելու եմ էլեկտրոնային կամարի տակով՝ նկարի ապահովության համար:

«Գեռնիկան»՝ պատից պատ և հատակից մինչև առաստաղ:

«Գեռնիկան»՝ գնդակից չխոցվող ապակու ետևում:

Եվ օրագրային գրառումս՝ «Գեռնիկային» դեմ-հանդիման:

Հոշոտված ձիու կերպարը՝ կենտրոնում: Ցուլի սև մարմինը և սպիտակ գլուխը՝ շեղբի նման ցցված պոզերով: Նկարի գույնը՝ սև և սպիտակ: Սպիտակի և սևի բոլոր նրբերանգները: Կենտրոնում, սակայն, գերակշռողը սպիտակն է: Չէ՞ որ սպիտակը հույս է: Հոշոտված ձիու գլ-

խավերևում վառվում է լամպը. առաջ պարզված մարդկային ձեռք, որ բռնել է լամպը:

Ամբողջ Իսպանիան հիացած է ցլամարտով, Պիկասոն դեմ է:

Պիկասո—Իսպանիա—ցլամարտ—արվեստագետի խիղճ. ձիուն խոշտանգող ցուլ և ցուլին գազազեցնող մարդ: Եվ ցլամարտիկին կատաղեցնող ամբոխ: Ֆաշիզմ, որ սև ձեռքով փորփրեց եվրոպական մայրցամաքը: Մի՞թե այս ամենը էլեկտրոնային կոճակի սեղմումով վայրկենապես անցել է նկարչի երակներով: «Գեռնիկայի» մեջ ցցված կոտոշը. կոտոշները. մարդկային մարմնի բզկտված կտորները. դեպի համամարդկայինը գրնացող ճանապարհ. ռումբեր, որ ցնցում են հողը, ծառը, տունը, մանկանը, ծերունուն. որ սպանում են սերը, սպանում են գեղեցիկը. սև և սպիտակ գույներ՝ լույսի և ստվերի խորհրդանիշերը: Խաղաղության և պատերազմի խորհրդանիշերը: Մի՞թե հնարավոր է այս ամենն արտահայտել դասական նկարչությամբ: Չէ՞ որ 20-րդ դարի պատերազմը շատ է տարբեր նախորդ պատերազմներից:

Եվ մարդիկ, որոնք նստած են դիմացի պատի տակ, միայնակ են «Գեռնիկայի» հետ: Նրանք անզոր են նկարչի վշտի առաջ՝ իսպանական Գեռնիկա քաղաքը 1937 թվականին մի գիշերում գերմանացիները հողին են հավասարեցրել: Եվ մարդիկ ապշած դիտում են արվեստագետի հոգեկան աշխարհի և իրականության փոխհարաբերությունից ծնված այդ բարդ պատկերը: Նրանք բոլորն անխտիր ատելու են պատերազմը և դողալու են խաղաղության վրա: Եվ հետո, երբ վերադառնամ Երևան, շատերն են ինձ հարցնելու՝ ցլամարտ տեսա՞ր: Ոչ, ասելու եմ: Ուրեմն ի՞նչ տեսար Իսպանիայում: «Գեռնիկան» տեսա, որ երկար ժամանակ Ամերիկայում է եղել, բայց հետո նկարչի ցանկությամբ, նրա մահից հետո տեղափոխվել է Իսպանիա: Եվ տասը փակի տակ է դրվել, որովհետև մի անգամ այցելուներից մեկը չի դիմացել պատերազմի վախին և հարձակվելով կտավի վրա դանակահարել է: Եվ դեռ գտնվելու է մեկը, որ հարցնի. «Ինչո՞ւ չի դիմացել»: Որովհետև «Գեռնիկայի» լեզուն դարի դաժանության, պատերազմի դաժանության, բարության կորստի մասին է: Եվ միաժամանակ, «Գեռնիկան» սթափեցնող հզոր զանգահարություն է՝ եթե խաղաղություն չինի, մոլորակը կվերածվի Գեռնիկայի:

ԳԱՌՆԻԿ ՄԱՆՈՒԿՅԱՆ

# Վայրի բադը

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Իմ պատանության տարիներին Գիլլի լիճը դեռ չէր ցամաքել: Ու Սևանի ալիքները հասնում էին մինչև ճանապարհի եզրը: Գիլլի լիճը քիչ վեր էր գտնվում մեր գյուղից: Լճի ճահճուտներում մարդաբոյ եղեգներ էին բարձրանում, որոնց կանաչ պատը դժվար էր ճեղքել: Գարնանը հարավից հազար տեսակ փետրավորներ էին գալիս լճում ապրելու, ու մինչև ուշ աշուն չէր լռում նրանց երգը: Գիշեր ու ցերեկ գյուղը լսում էր կանչ ու ճիչ, ամեն տեսակ խորհրդավոր ձայն ու աղմուկ: Ընկերներով հաճախ գնում էինք լիճ՝ որսի: Կողակն ու բեղլուն, բախտակն ու իշխանը խայտում էին լճի մաքուր ջրերում: Մերկանում էինք մինչև գոտկատեղ, մտնում եղեգնուտը: Ձուկ էինք որսում.



թռչնաբներից հավաքում ձվեր: Եղեգնուտի կողքին վառում էինք խարույկ, չորացնում շորերս, իսկ տաք մոխրի մեջ ձուկ էինք խորովում: Երբեմն խելքներիս փչում էր տուն բերել մանր ու մեծ, սպիտակ ու կապտավուն, նախշուն ձվեր:

Մի օր, մորիցս թաքուն, վայրի բադի ձու դրեցի թխսի տակ:

Անցան օրեր, և ձվերը դեղնավուն ճտեր դարձան: Բայց իմ դրած ձուն դեռ մնում էր: Մայրս շոշափում էր, պահում լույսի տակ: Ափսոսում էր դեն նետել: Վերջապես դուրս եկավ ճուտը:

Վայրի այդ ճուտը քիչ էր տարբերվում իր ցեղակիցներից:

Մեծացավ ու մի օր էլ փորձեց թռչել:

Խուզեցինք թևերը: Ու մինչև ամռան վերջը մենք խաղում էինք, բադն աճեցնում էր թևերը: Մի օր էլ նա օդ բարձ-



րացավ: Հերթական խուզումը մոռացել էինք կատարել: Բակի հավերը, սագերը. բադերն ու հնդուհավերը խառնվեցին իրար:

Ի՞նչ աղմուկ էր: Վազեցինք բադի ետևից: Իսկ նա հանգիստ, թևերը տարածած, վեր էր բարձրանում:

Երկար ժամանակ հետևում էինք նրա թռիչքին, մինչև վերածվեց աննշան կետի: Իսկ բակի փետրավորները աղմկում էին. չգիտես՝ վախի՞ց, թե՞ նախանձից:

## ԱԼԵՔՍԱՆԴՐԱ ԻՎՈՅԼՈՎԱ

Սառա Բեռնարը 19-րդ դարի վերջերի ֆրանսիական հռչակավոր դրամատիկ դերասանուհիներից մեկն էր: Հաջողությունները փարիզյան բեմում, ինչպես նաև հյուրախաղերը Եվրոպայում և Ամերիկայում նրան համաշխարհային փառք բերեցին:

Տասնհինգ տարեկան էր, երբ սկսեց շփվել Փարիզի կուլտուրական կյանքի հետ: Այն օրերին «Կուրսել» փողոցի գրական սալոնում կարելի էր հանդիպել այնպիսի նշանավոր գրողների, ինչպիսիք էին հայր և որդի Դյումաները, Թեոֆիլ Գոտյեն և շատ ուրիշներ:

Սառա Բեռնարը թատրոն կատարած իր առաջին այցելության ժամանակ անզուսպ լաց եղավ Ժան Ռասինի պիեսում մեռնող հերոսի համար:

— Հիշում եմ, թե ինչպես էի հուզվել, երբ ինձ առաջին անգամ ընդունեցին թատերախումբ: Հիշում եմ նաև առակը, որ կոչվում էր «Երկու դունդունացող աղավնիներ», և համակրելի պարոնին, որը լսում էր ինձ ակնհայտ խրախուսանքով: Այդ մարդը ականավոր մանկավարժ և դերասան Պրավոն էր: Ես դարձա նրա աշակերտուհին...

1862 թիվ. սեպտեմբերի 1: Սառա Բեռնարի դեբյուտը Ռասինի «Իֆիգենիա» պիեսում, ազդարարեցին «Կոմեդի ֆրանսեզ» թատրոնի աֆիշները: Սակայն իսկական հաղթանակը դեռ հեռու էր տասնութամյա դերասանուհուց: Նույնը կարելի է ասել նրա հաջորդ դերերի մասին: «Տաղանդը,— Սառա Բեռնարի մոտիկ ընկերոջ՝ գրող Ալեքսանդր Դյումայի խոսքերով ասած,— մի քմահաճ պարոն է, որը սիրում է զբոսնել իր սեփական կառքով: Նա միշտ չէ, որ կանգնում է առաջին կանչից: Բայց... մի տեսարան, մի դերբառ, շարժում բավական է, որպեսզի նա ձեզ տեսնի և կանգ առնի... և ճանապարհը ձեր առջև բաց է»:

Հենց Դյուման էլ նվիրեց Սառա Բեռնարին այդ երջանիկ դերը: Բայց պահանջվեցին վեց երկար տարիներ, որպեսզի դերասանուհին հաղթահարեր բոլոր դժվարություններն ու թերությունները, գտներ ինքն իրեն և բացեր իր դերասանական խառնվածքի ողջ հարստությունը:

«Օդեոն» թատրոնը երիտասարդության կողմից սիրված էր: Աննա Դամբի դերը «Քին» պիեսում: Բեմն ամբողջովին ծածկված էր ծաղիկներով: Քմահաճ, չարաճճիորեն ծաղրելու պատրաստ հանդիսատեսը գոռում է. «Բռավո Սառա, կեցցե՛ս, Սառա» և ճանապարհում է նրա կառքը մինչև տուն:

Այդ օրվանից դերասանուհու փառքը բազմապատկվում է յուրաքանչյուր նոր դերի հետ միասին:

Իրար հաջորդում են «Ռյուի Բլազ» և «Էրնա-





Դոննա Մարիայի դերում
(Վ. Հյուգոյի «Ռյուի Բլազ») պիեսում

# ՍԱՌԱ ԲԵՌՆԱՐ

(1844—1923 թթ.)

լի» պիեսների բեմադրությունները: Դրանց հեղինակը՝ նշանավոր Վիկտոր Հյուգոն, գրում է Սառա Բեռնարին. «Դուք ինձ ցնցեցիք, ինձ՝ ծեր մարտիկիս: Իմ արցունքները պատկանում են ձեզ»:

Այդ դերերին հաջորդեցին Ֆեդրան և Անդրոմաքեն Ռասինի համանուն ողբերգություններում, Դեզդեմոնան «Օթելլոյում» և լեդի Մակբեթը Ուիլյամ Շեքսպիրի համանուն պիեսում, Մարգարիտա Գոթյեն Ալեքսանդր Դյումա-որդու «Կամելիազարդ տիկինը» վեպում: «Ես արտասվեցի բոլոր երեք գործողությունների ընթացքում և թատրոնից դուրս եկա ամբողջովին վերակենդանացած»,— պատմում էր Կոնստանտին Ստանիսլավսկին 1897 թվականին, տեսնելով նշանավոր դերասանուհուն Էդմոն Ռոստանի «Սամարիտուհին» պիեսում:

Ամենօրյա ծանր աշխատանքի մեջ, ստեղծագործական ուժերի անմնացորդ նվիրումով ընթացավ դրամատիկ դերասանուհու 65 տարվա բեմական ուղին: Կրակոտությունն ու նուրբ ըզգացողությունը թույլ էին տալիս նրան հաղորդելու իր մարմնավորած հերոսուհիների հոգու ամենաթաքուն նրբերանգները: Նրան բարձր են գնահատել Էմիլ Զոլան, Անատոլ Ֆրանսը, Ժյուլ Ռենարը:

Սառա Բեռնարը իր հազվադեպ ազատ ժամերին զբաղվում էր գեղանկարչությամբ, քանդակագործությամբ և հուշագրությամբ: Նա անընդհատ որոնումների մեջ էր և հյուրախաղերով հաճախ էր գալիս աշխարհի տարբեր երկրներում: 1881, 1882, 1898—1899 թվականներին ելույթներ է ունեցել Ռուսաստանում: Սառա Բեռնարը հաջողությամբ փորձում էր իր ուժերը տղամարդկանց դերերում (Համլետ, Լորենցաչչո, Արծվիկ): Նա բեմը չթողեց մինչև խոր ծերություն: Նույնիսկ ոտքի անդամահատումից հետո չհեռացավ բեմից...

Այսօր Փարիզի Շատլե հրապարակում կա մի թատրոն, որը կրում է այդ նշանավոր դերասանուհու անունը՝ «Սառա Բեռնարի թատրոն»:

Թարգմ. Շ. ՆԱԼԲԱՆԴՅԱՆԻ

## ԺԱՄԱՆՑ

Հորիզոնական ուղղությամբ հարկավոր է լրացնել հայ գրողների և բանաստեղծների անունները: Ձեզ կօգնեն այն վանդակները, որոնցում տառերը ընդհանուր են մի քանի տողի համար:

Կազմեց՝ ՎԱՆԻԿ ԱԼԵՔՍԱՆՅԱՆԸ






*Դու գուցե երբեմն-երբեմն ես մտնում ձեր դպրոցի գրադարանը. կամ գրքերի առատությունից է, որ մտածում ես՝ երբ էլ լինի՝ կկարդամ, կամ էլ տանը սեփական հարուստ գրադարան ունես: Իսկ երբեմն մտքովդ անցե՞լ է, որ ինչ-որ մի տեղ քո հասակակիցն ու հայրենակիցը անկարող է իր մայրենի լեզվով գրքերի լայն ընտրություն կատարել: Ցավոք, առայժմ դեռ այդպիսի վայրեր երբեմն հանդիպում են, որոնք մեր հանրապետությունից դուրս, մեծ քաղաքներից ու կենտրոններից հեռու գտնվելու պատճառով ապահովված չեն հայ հեղինակների հայերեն հրատարակություններով: Մենք քեզ ենք տալիս այդ վայրերից մեկի հասցեն՝*

*ՎՐԱՑԱԿԱՆ ՍՍՀ,*
*ԲՈԳԴԱՆՈՎԿԱՅԻ ՇՐՋԱՆ,*
*ՓՈՔՐ ԱՐԱԳՅԱԼ ԳՅՈՒՂԻ ԴՊՐՈՑ*

*Եթե կարող ես, օգնիր նրանց հայ դասական ու ժամանակակից հեղինակների գրքերով, որովհետև թեև մեր հանրապետությունից դուրս այդպիսի գրքեր առաքվում են, սակայն միշտ չէ, որ դրանց քանակը բավարար է լինում:*

Գլխավոր խմբագիր՝ **ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ**

Խմբագրական կոլեգիա՝ ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.:

Պատասխանատու քարտուղար՝ ՏՈՆՈՅԱՆ Թ., գեղարվեստական խմբագիր՝ ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ., տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ԱՅՎԱԶՅԱՆ Վ.:

## ՊԱՏԿԵՐԱՍՐԱՀ



ԷԴՎԱՐԴ ԻՍԱԲԵԿՅԱՆ. «ԱՎԱՐԱՅՐԻ ՃԱԿԱՏԱՄԱՐՏԸ», 1984 Թ. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՊԱՏԿԵՐԱՍՐԱՀ (ՀԱՏՎԱԾ)

